## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԹՈՒՐՔԻՈՅ* մէջ կրօնական հարցերու ելեւմուտքի վիճաբանութիւնները պատճառ դարձան որ կառավարութիւնը դիրք ճշդէ կրօնքի հանդէպ։ Այդ հարցերով զբաղող պետական նախարարը՝ Իզէթ Աքչալ յայտարարեց.— «Կը գտնենք որ կրօնքի ազատութիւնը ինչպէս միւս բոլոր ազատութիւնները անհատին սրբազան իրաւունքներուն մաս կը կազմէ։ Բայց չենք կրնար հանդուրժել որ կրօնքը քաղաքական իբրեւ գործիք կամ քարոզչութեան միջոց ծառայէ իբրեւ նպատակ ունենալով օպսքիւրանթիսթ զգացումներ հրահրել քաղաքացիներուն մէջ մտքի ազատութեան դէմ»։

*ՎԻԷԹՆԱՄԻ* նախագահը Հօ Շի Մին ամանորի առթիւ չափածոյ պատգամ մը ուղղեց իր ժողովուրդին.— «Ողջոյն մեր պետութեան որ 15 գաւառներ ունեցաւ։ Ողջո՛յն մեր կուսակցութեան, իր երեսուն տարիներով երիտասարդ, եւն. եւն.։

*ԱՄԵՐԻԿԱՑԻ* Եալ քաղաքի համալսարանի փրոֆէսէօր մը (տնտես. գիտութեանց) առաջարկեց որ թերաճ երկիրներու մէջ, անհատական կազմակերպութիւններ նպաստ տան այն զոյգերուն որ զաւակ չեն ունենար, այլ խօսքով հակաընտանեկան նպաստ սահմանել։ Կ'առաջարկէ մանաւանդ որ յատուկ պարգեւներ տրուին ամուսնացած այն այր մարդոց որ կամաւոր ամլութիւնը կ'ընդունին։ Այս դրութիւնը գոյութիւն ունի արդէն Հնդկաստանի մէջ։

*ՅՈՒՆՈՒԱՐ* 1էն սկսեալ Ֆրանսացիներուն ինքնութեան այն թուղթերը որոնք ազգային չեն (Քառթ նասիոնալ տ'իտանթիթէ) ի զօրու չեն։ Ֆրանսացիները ծնունդով կամ հպատակութեամբ կրնան դիմել իրենց թաղի ոստիկանատունը ստանալու համար ազգային թուղթը որ կը տրուի 1956էն ի վեր, ուրեմն անոնք որ այդ թուականէն ետք փոխած են իրենց թուղթը պէտք չունին նորոգելու։ Ոստիկանատունը բաց է նաեւ այսօր՝ Յունուար 1։

*ՊԱՊԸ* յայտարարեց.— «Այսօր ինչպէս երէկ, Եկեղեցին հանդիսաւորապէս կը հաստատէ որ իր եւ ընտանիքին իրաւունքները աւելի առաջ կուգան քան՝ պետութեան»։

*ՃՇԴՈՒՄ*.— Նոր Ֆրանքը յօդուածին մէջ (Յառաջ, Դեկտ. 30, էջ 3) Բ. սիւնակի 4րդ հատուածին մէջ 50.000 փր. ամսական ստացող ճարտարագէտը պիտի ստանայ 1.500 Ն. Ֆ., պէտք է ըլլայ — 150.000 Փր. ամսական եւն.։

## ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Հ. Յ. Դ. Փարիզի Շրջ. կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 20.30ին, Մշակոյթի Տան սրահին մէջ։

Կը զեկուցանէ ընկեր ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ։

### ՆՈՒԷՐ

Գ. Սմսարեան իր մօր Տիկին Ազապի Սմսարեանի մահուան առաջին տարեդարձին առթիւ հինգ հազար Փր. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչին իր բարենպատակ ձեռնարկներուն համար։ Ստանալ «Յառաջ» էն։

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ "ՕՐԸ" ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղին։

Կիրակի Յունուար 3 կէսօրէ վերջ ժամը 3ին Սթիւտիօ Քոլէժի մէջ, 24 Րիւ Տիւնուար։

Գեղարուեստական ճոխ բաժին, որուն կը մասնակցի Հայկազեան Վարժարանի աշակերտութիւնը, ղեկավարութեամբ՝ ուսուցչուհի Օր. Ստեփանեանի։

Երգ, արտասանութիւն, եւ տրամախօսութիւն մը։ Հայկական պարեր։

Երեք լաւ արտասանող փոքրիկներու գնահատանքի մրցանակ պիտի տրուի օրուան դատական կազմին կողմէ։

Հայ Կաղանդ Պապան Նոր տարուան առթիւ նուէրներ պիտի բաժնէ ներկայ բոլոր փոքրիկներուն։

Մուտքը ազատ է։

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՊՕՄՈՆ*.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի եւ «Յառաջ» խումբի միացեալ ընկերական ժողովը այս Շաբաթ երեկոյ ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

### ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Ս. Ծնունդի եւ Նոր Տարուան առթիւ մեր ջերմագին շնորհաւորութիւնները կը յայտնենք, բոլոր ազգականներուն, ընկեր-ընկերուհիներուն, բարեկամներուն, մաղթելով բոլորին բարի Ծնունդ եւ երջանիկ տարիներ։

ՏԷՐ ԵՒ ՏԻԿ. ԶԱԼԼԱԳԵԱՆ
ԵՒ ԶԱՒԱԿՈՒՆՔ

Հասցէ.—
Zallakian, 14851 Horger Allen Park Mich.

### ՆՈՐ ՏԱՐԻ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴ
ժամանակացոյց արարողութեանց

Ս. Յովհ. Մկրտիչ (Փարիզ)

Յունուար 5, Ճրագալոյց Ս. Ծննդեան, երեքշաբթի երեկոյեան, սկիզբ ժամերգութեան ժամը 15.30ին, քառաձայն Ս. պատարագ ժամը 17ին։

Յունուար 6, Տօն Ս. Ծննդեան եւ Աստուածայայտնութեան, Չորեքշաբթի, սկիզբ ժամերգութեան ժամը 8ին, Ս. պատարագ ժամը 10ին։

Կը պատարագէ եւ կը քարոզէ Գեր. Տ. ՍԵՐՈՎԲԷ Եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆ, յետ պատարագի Ջրօրհնէքի արարողութիւն։

Յունուար 7.— Հինգշաբթի յիշատակ Մեռելոց, Ս. պատարագ ժամը 10ին։

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Յունուար 3, Կիրակի, ժամերգութիւն ժամը 7.45ին, Ս. պատարագ 9.45ին։

Յունուար 6, Չորեքշաբթի, ժամերգութիւն Ս. Ծնունդի ժամը 9ին։

Յունուար 9, Շաբաթ, Ճրագալոյց, առաւօտեան ժամերգութիւն ժամը 8.30ին։ Երեկոյեան ժամերգութիւն 4.30ին։ Ս. պատարագ, երկսեռ խումբով 6ին։

Յունուար 10, Կիրակի, Ս. Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն, առաւօտեան ժամերգութիւն ժամը 7.30ին։ Ս. պատարագ բազմաձայն երկսեռ խումբով ժամը 9.45ին, Հոգեհանգիստ Մեռելոցի ժամը 11.15ին, Ջրօրհնէք ժամը 11.45ին։

ՊՕՄՈՆ

Յունուար 1, Ուրբաթ.— Կաղանդ եւ Տարեմուտ 1960 Թուին Քրիստոսի։

Սկիզբ ժամերգութեանց ժամը 8.30ին, Գոհաբանական Ս. պատարագ 10։

Յունուար 5, Երեքշաբթի.— Ճրագալոյց Ս. Ծննդեան, երեկոյեան խթման արարողութիւն ժամը 4, Ս. պատարագ եւ Նախատօնակ ժամը 5.30։








Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Փարիզի Մասնաճիւղին կողմէ
Կիրակի 3 Յունուար, ժամը 16 – 24,

HOTEL LUTETIA*ի* մեծ սրահին մէջ։

**Orchestre B. Dédédjian et ses Attractions**

Հայկական եւ կովկասեան ժողովրդական երգեր ու պարեր։

Կը մասնակցի «ՍՕՍԻ» երկսեռ պարախումբը, ղեկավարութեամբ Տիկին Քիւրճեանի եւ մասնակցութեամբ պարուհոյց Գ. Վահէ Ճէրահեանի, (Պէյրութէն նոր ժամանած)

Օր. Թարոն իր նորագոյն մենապարերով, կ'երգէ՝ Օր. ՄԱՐՈՒՔԵԱՆ։

Խօսնակ՝ Գ. ԳԶԸՐԵԱՆ — Ճոխ եւ հայկ. համադամ պիւֆէ,

Մուտքի տոմս՝ 500 ֆրանք, ուսանողի՝ 300 Փր., (իրենց քարտերը ցոյց տալով)։

ԾԱՆՕԹ.— Սեղանները ապահովել հեռախօսելով՝ Կիւթէնպէր 24-38 մինչեւ Դեկտեմբեր 30։ Սեղանները պէտք է գրաւել մինչեւ ժամը 19, կազմակերպիչ յանձնախումբը պատասխանատու չէ այդ ժամէն յետոյ եկողներուն։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Օր. Քլոտին Թարոն իր Ա. վաստակէն հազար Փր. կը տրամադրէ Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին։

*ՃՇԴՈՒՄ*.— Զարչըլը Արթին Աղայի նկարագրութեան մէջ Ռոզինի դերը կատարողն էր Օր. Յասմիկ Կորկորեան։









## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Կեդր. վարչութեան կողմէ, մասնակցութեամբ Փարիզի շրջանի 10 մասնաճիւղերուն :

Յունուար 7ին, ժամը 15 – 18 Սալ Քատէի մեծ սրահին մէջ, 21 Րիւ Քատէ :

Գեղարուեստական բաժնին կը մաս – նակցին :

Անի Թարօն իր գեղեցիկ պարերով :

Կայանի խումբէն Սիւզան Մուրատեան, Սօնա Տէր Խաչատուրեան, Քլօտին Քէհ–եայեան ծիծաղաշարժ «սքէչ»ով :

Ժան Փիէռ Ներկարարեան (ջութակ) :

Իսիի Թրիմեան վարժարանի երգչա – խումբը կ'երգէ կայանի քայլերգը, յօ – րինուած Տիկին Էլ. Բիւզանդի կողմէ, երաժշտութիւն Մեսումենցի, առաջնոր – դութեամբ Ս. Քաջեանի :

Արտասանութիւններ «Անարատ Յղու – թեան » աշակերտներու կողմէ :

Ձեռնածու Կի – Գէր :

ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱ  ՆԱԽԸՆԹՐԻՔ

Կը հրաւիրուին ծնողքները եւ բարե – կամները իրենց փոքրիկներով, մասնա – ւոր օթաքառներ Շաւիլէն, Ալֆորվիլէն, Առնուվիլէն, Իսիէն, Քաշանի օթօքառին համար հաւաքուիլ 39 Րիւ Մատամ Քիւ – ռի, Պանեէօ, ժամը 14ին :

Ալֆորվիլէն հանրակառքը կը մեկնի ժամը 14ին, փլաս Քարնօյէն : Միւս ար – ուարձաններէն կը խնդրուի տեղականալ տեղւոյն մասնաճիւղերէն :

Շաւիլի Կապ. Խաչի մասնաճիւղին կող– մէ վարձուած օթօքառ մը «Փուան տը Շաւիլ»էն կը մեկնի ժամը մէկուկէսին, կը հանդիպի հայկական դպրոցը եւ կը կենայ Շաւիլի օթօպիւսի բոլոր կայա – րաններըլ : Դպրոցական տարիք ունեցող բոլոր փոքրիկներուն համար ձամբոր – դութիւնը ձրի է, իսկ մեծերու համար 3.00 Ն. Ֆր. : Իսիէն կը մեկնի ժամը 13.30– ին, դպրոցին առջեւէն :

### ԱՄԱՆՈՐԻ ՀԱՆԴԷՍ

Իսիի Թրիմեան վարժարանի Ամանորի հանդէսը, այս Կիրակի, ժամը 16ին, վարժարանին մէջ :

Աշակերտութեան կողմէ պիտի ըլլան արտասանութիւններ, երգեր, տրամա – խօսութիւններ եւ մանկական թատերա – խաղ մը՝ «Կաղանդ Պապան» :

Կը հրաւիրուին ծնողքները, եւ Իսիի գաղութը, ներկայ գտնուիլ սոյն հանդէ – սին :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :



---

Այրի Տիկին Արշալոյս Պալեան, Տէր եւ Տիկին Էժմոն Պարաքեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Կարպիս Պալեան եւ զա – ւակները Այրի Տիկին Ճենտերէճեան եւ զաւակներն ու թոռները, Տէր եւ Տիկին Սեբոբէ Կիրակոսեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Միհրան Ղազարեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Աբգար Տուտճեան եւ իր աղջիկը ու բոլոր պա – րագաները սրտի խորունկ ցաւով կը ծա – նուցանեն իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, մեծհօր, եղբօր եւ ազգականին

ՍՏԵՓԱՆ ՊԱԼԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Յունուար 1ին, իր բնակարանին մէջ, 59 տարեկանին :

Յուղարկաւորութիւնը պիտի կատար– ուի Յունուար 5ին, Երեքշաբթի ժամը 2– ին, իր բնակարանին մէջ, 1 Րիւ լ'Ապպէ տը Միր, Անիէռ : Մարմինը պիտի ամ – փոփուի Անիէռի Նոր գերեզմանատունը :

ԾԱՆՕԹ.— Մահագդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել :

---

### ՆՈՐ ՏԱՐԻ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴ

ժամանակացոյց արարողութեանց Ս. Յովհ. Մկրտիչ (Փարիզ)

Յունուար 5, Ճրագալոյց Ս. Ծննդեան, երեքշաբթի երեկոյեան, սկիզբ ժամեր – գութեան ժամը 15.30ին, քառաձայն Ս. պատարագ ժամը 17ին :

Յունուար 6, Տօն Ս. Ծննդեան եւ Աստ– ուածայայտնութեան, Չորեքշաբթի, ըս– կիզբ ժամերգութեան ժամը 8ին, Ս. պա– տարագ ժամը 10ին :

Կը պատարագէ եւ կը քարոզէ Գեր. Տ. ՍԵՐՈՎԲԷ Եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆ, յետ պատարագի Ջրօրհնէքի արարողութիւն :

Յունուար 7.— Հինգշաբթի յիշատակ Մեռելոց, Ս. պատարագ ժամը 10ին :

#### ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Երեքշաբթի 5 Յունուար, Ճրագալոյց ժամը 16ին : Կը պատարագէ Զաւէն վրդ. Արզումանեան :

Չորեքշաբթի, Ս. Ծնունդ, արարողու– թիւն ժամը 8.30, պատարագ ժամը 10 – ին, կը պատարագէ Տէր Նշանի քհնյ. Ալթունեան :

#### ԱՐՆՈՒՎԻԼ

Ս. Ծննդեան հոգեպարար արարողու – թիւնները կը սկսին յառաջիկայ Յուն – ուար 9ի Շաբաթ երեկոյ ժամը 5ին :

Սիրով կը հրաւիրուի ժողովուրդը ներկայ ըլլալու այդ օրուան հանդիսաւոր արարողութեանց եւ Ս. Պատարագին :

ՎԱԼԱՆՍ.— Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ . Երեքշաբթի, Ճրագալոյց Ս Ծննդեան :

ա) Առաւօտեան ժամերգութիւն ժամը 9ին :

բ) Երեկոյեան խթման արարողութիւն եւ գրքերու ընթերցում ժամը 5ին :

գ) Ս. Ծննդեան յայտնութեան ժամեր– գութիւն եւ գիշերային պատարագ ժամը 9ին :

Յունուար 7.— Հինգշաբթի, Յիշատակ Մեռելոց, առաւօտեան ժամերգութիւն, ժամը 9ին :

Յունուար 10.— Կիրակի, Ջրօրհնէքի արարողութիւն, ժամը 10ին :



### ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Այս Շաբաթ (Յունուար 9), նախա – ձեռնութեամբ Կապոյտ Խաչի տեղական մասնաճիւղին, Սալ տէ Ֆէթի մէջ :

Առաջնակարգ նուագախումբ Լիոնէն : Կը մասնակցի երգչուհի Ռընէ Կապի :

---

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՄՈՆՓԵԼԻԷ.— Մ. Փափազեան մա – հագդը ստացանք յուղարկաւորութեան թուականէն վերջ :

ԼԻՈՆ.— Քարաքիւլահեան, նոյնպէս :

### Հ. Յ. Դ.

#### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱՐԵՒՄՏ. ԵՒՐՈՊԱՅԻ Կ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ մարմին – ները .—

ՎԻԷՆԻ «Անի» կոմիտէն այս Շաբաթ գիշեր, ժամը 8.30ին :

ՏԷՍԻՆԻ ենթակոմիտէն այս Կիրակի կէս օրէ ետք ժամը 3.30ին :

Այս երկու ժողովներուն ներկայ կ'ըլ – լան Կ. Կ.ի ներկայացուցիչները :

---

### ԵՂԱՆԱԿԻՆ ԱՄԷՆԷՆ ՓԱՅԼՈՒՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

#### ՇԱՐՊՕՆԻԷՐԻ ԿՐԱՆ ՍԷՐՔԼԸ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

Ի նպաստ Լիոնի Եկեղեցւոյ Շինութեան, Եկեղեցաշէն Տիկնանց Միութեան կողմէ կազմակերպուած պարահանդէսը տեղի պիտի ունենայ Յունուար 10ին, Կիրակի օր, ժամը 16էն մինչեւ առաւօտ :

Փարիզի ՍՕՍԻ Ֆօլքլօրիկ խումբը, ղեկավարութեամբ Տիկին Քիւքնէրեանի, եւ մասնակցութեամբ Գ. Ճէրահեանի պիտի ճոխացնէ այս պարահանդէսը, հայկական հաճելի եւ ինքնուրոյն պարերով եւ երգերով :

Մասնակցութեամբ ԱՐՄԵՆԻԱ նուագախումբին ղեկավարութեամբ ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆԻ :

Նոյնպէս Շարպօնիէրի միջազգային խումբին աքրաճախոններով եւ նուագա – խումբով ճոխացած :

Տեղերը սահմանափակ ըլլալով, կը խնդրուի յարգոյ հայ ժողովուրդէն, այժմէն ապահովել իրենց սեղաններն ու տոմսերը :

Հեռաձայնել.— 28–54–03 եւ կամ ժամը 16էն յետոյ 60–47–18 :

---



---



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

Տէր եւ Տիկին Խաչատուր Արզումանեան եւ զաւակը, Օրիորդներ Լիւսիէն եւ Վարսենիկ Արզումանեան, Տէր եւ Տիկին Պաղտասար Արզումանեան, Պ. Օ. Գալուստեան, Պ. Ժան Արզումանեան, Տէր եւ Տիկին Աւետիս Արսլանեան եւ զաւակները, Օրիորդներ Ժինէթ եւ Մարի Գալուստեան, Եղիազարեան եւ Շէրպէթճեան ընտանիքները, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց եղբօր, եղբօրորդւոյն, զարմիկին եւ ազգականին՝

ԺԱՆ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆԻ
(29 տարեկան)

արկածալի մահը, որ տեղի ունեցաւ Յունուար 1ին, Իսի լէ Մուլինօ:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս երկուշաբթի ժամը 10.30ին: Հաւաքուիլ Իսիի գերեզմանատան դուռը, (191 Րիւ տը լ'Էկալիթէ):

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

## Ն.Հ.Ց. Դ.

### ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Կազմակերպուած Հ.Յ.Դ. Փոթորիկ խումբի կողմէ:

Կը դասախօսէ՝ ԸՆԿ. Ս. ԹՈՐՈՍԵԱՆ:

Նիւթ՝ Լեզուական խնդիրը Խորհրդային Միութեան մէջ:

Այս Շաբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ: Կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերները եւ Հ.Յ.Դ. Նոր Սերունդի անդամները:

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Կը տօնուի Տօնածառ – հանդէսով՝ Յունուար 10ին, կիրակի կէսօրէ ետք, ժամը 3ին, Հ.Յ.Դ. Տան մէջ: Նախաձեռնութեամբ Ֆ.Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղին եւ մասնակցութեամբ դպրոցին աշակերտութեան:

Գեղարուեստական ճոխ յայտագիր:

Ներկայացում, արտասանութիւն, տրամախօսութիւն, եւ այլ անակնկալներ: Ղեկավարութեամբ ուսուցիչ Պ. Թրագօշի:

Կը հրաւիրուի Տէսինահայութիւնը անխտիր:

Մուտքը ազատ է:

### ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Տէր եւ Տիկին Թիէրրիի վերջին ճամբորդութիւններու ընթացքին լուսանկարուած պատկերներու ներկայացում եւ մեկնաբանութիւն:

ԱՂԹԱՄԱՐ, ԱՆԻ, ՀՌՈՄՈՍ, ԿԱՐՍ, ՏԱՅՔ:

Ուրբաթ, Յունուար 15ին, ժամը 8.45, Սանթրոյի սրահին մէջ, 8 ժան Կուժօն փողոց:

Տեղերը սահմանափակ ըլլալով՝ կը խնդրուի այժմէն տոմսերը ապահովել հայկական թերթերու մօտ:

### ԱՄԱՆՈՐԻ ՀԱՆԴԷՍ

Իսիի Խրիմեան վարժարանի Ամանորի հանդէսը, այս Կիրակի, ժամը 16ին, վարժարանին մէջ:

Աշակերտութեան կողմէ պիտի ըլլան արտասանութիւններ, երգեր, տրամախօսութիւններ եւ մանկական թատերախաղ մը՝ «Կաղանդ Պապան»:

Կը հրաւիրուին ծնողները, եւ Իսիի գաղութը, ներկայ գտնուիլ սոյն հանդէսին:

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

### ՆՈՐԵՐՈՒ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

Փարիզի Լէնսէ տ'Օփթիքի վարժարանի չորս տարուան շրջանը աւարտած է Եդուարդ Մարտիկեան, 19 տարեկան, ամէն տարի առաջին տեղը գրաւելով իր դասարանին մէջ: Իսկ պետական վկայականի քննութեան առթիւ 70 հոգի ներկայացած են, որոնցմէ 20 հոգին ստացած են վկայական, ուր վերոյիշեալ երիտասարդը միայն արժանացած է Մանսիօն պիէն տիտղոսով վկայականին:

## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Այս Շաբաթ (Յունուար 9), նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի տեղական մասնաճիւղին, Սալ տէ Ֆէթի մէջ:

Առաջնակարգ նուագախումբ Լիոնէն: Կը մասնակցի երգչուհի Ռընէ Կապի:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղը ստացած է Պ. Նիկողոս Նոտարեանէ 20 Ն. Ֆր. փոխան ծաղկեպսակի Սիրուն Կակոյեանի մահուան առթիւ:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Սէվրանի մասնաճիւղիս բոլոր ընկերուհիները եւ ընկերները իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն ընկերուհի Տ. Մարա Պապիկեան ընտանիքին իրենց հօր եւ աներհօր Թորոս Թորոսեանի մահուան առթիւ:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան. —

Պ. Անանիա Խաչնէճեան իր կնոջ հանգուցեալ Մարի Խաչնէճեանի մահուան առաջին տարելիցին առթիւ հինգ հազար ֆրանք: Նոյն առթիւ Տէր եւ Տիկին Յարութիւն Խաչնէճեանէ երկու հազար, Ռոմանէն Տիկին Թագուհի Ճէնազեանէ տասը հազար, Կարտանէն Պ. Տիրան Աղաեան 18 տարեկան, իր առաջին վաստակէն հազար, Սէնթ Էթիէնէն Պ. Միհրան Աբրահամեան երեք հազար ֆրանք: (Գումարները հին ֆրանքով):

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Մարսէյլէն Այրի Տիկին Աղաւնի Աստուրեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Սամուէլեան եւ Աստուրեան ընտանիքները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ ժամը 10.30ին Փրատոյի Մայր եկեղեցւոյն մէջ, իրենց ամուսնոյն, հօր եւ հարազատին՝

ԱՐԱՄ ԱՍՏՈՒՐԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

## "ՅԱՌԱՋ"Ի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Ֆրանսա եւ հասարակապետութիւն —
Տարեկան.— 40 Ն. Ֆր. (4000)
Վեցամսեայ 22 Ն. Ֆր. (2200):

Արտասահման.—
Տարեկան 50 Ն. Ֆր. (5000):

Բաժանորդագրութիւնները կը վճարուին կանխիկ:

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՐՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ԵՂԱՆԱԿԻՆ ԱՄԷՆԷՆ ՓԱՅԼՈՒՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

### ՇԱՐՊՕՆԻԷՐԻ ԿՐԱՆ ՍԷՐՔԼԸ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

Ի նպաստ Լիոնի Եկեղեցւոյ Շինութեան, Եկեղեցաշէն Տիկնանց Միութեան կողմէ կազմակերպուած պարահանդէսը տեղի պիտի ունենայ Յունուար 10ին, Կիրակի օր, ժամը 16էն մինչեւ առաւօտ:

Փարիզի ՍՕՍԷ Ֆօլքլորիկ խումբը, ղեկավարութեամբ Տիկին Քիւրքճեանի, եւ մասնակցութեամբ Պ. Ճէրահեանի պիտի ճոխացնէ այս պարահանդէսը, հայկական հանելի եւ ինքնուրոյն պարերով եւ երգերով:

Մասնակցութեամբ ԱՐՄԵՆԻԱ նուագախումբին ղեկավարութեամբ ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆԻ:

Նոյնպէս Շարպօնիէրի միջազգային խումբին աքրաֆսիոններով եւ նուագախումբով ճոխացած:

Տեղերը սահմանափակ ըլլալով, կը խնդրուի յարգոյ հայ ժողովուրդէն, այժմէն ապահովել իրենց սեղաններն ու տոմսերը:

Հեռաձայնել.— 28–54–03 եւ կամ ժամը 16էն յետոյ 60–47–18:





Imprimerie Spéciale du Journal « Haratch »







պիտի չըլլայ Փարիզի ժողովին մէջ , — կը գրեն կարգ մը թերթեր ։

Մինչդեռ ստոյգ է այն՝ ինչ որ կը փափաքէր . — Արեւմուտքի մեծերուն հետ ժողով մը գումարել ։ Հետեւաբար , դժուար թէ այսուհետեւ տեղի տայ , — կ'ըսեն ուրիշներ , աւելցնելով թէ ան – չուշտ որոշ համաձայնութիւններ պիտի կնքէ ։ Նոյնիսկ այս պարագային , խոր – հրդային Վարչապետը պիտի համաձայ – նի իրեն համար անհրաժեշտ հարցերու շուրջ , մեծ գին մը պահանջելով իր դրա– կան պատասխանին ։

« Թաս » գործակալութեան յայտարա – րութիւնը որոշ մտահոգութիւն մը ըս – տեղծած է Միացեալ Նահանգներու մէջ , մանաւանդ անոր համար՝ որ հրթիռները պիտի իյնան ամերիկեան ջուրերու մէջ , ուր պիտի ղրկուին նաեւ խորհրդային նաւեր ։

Այս ծրագիրը մտահոգած է նաեւ Ա – ւստրալիան , նկատելով որ հրթիռները պիտի իյնան նաեւ Աւստրալիոյ մօտերը ։

———o———

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ Ներքին Նախարարը բացարձակապէս արգիլեց Գերմանական Կուսակցութեան (ազգայ – նական) ցոյցերը , որոնք պիտի կատար – ուէին կիրակի օր ։ Այս արգելքը դրուած է այն պատճառաբանութեամբ , թէ կու – սակցութեան պատկանող անդամներ մասնակցած են հակասեմական շարժում– ներու ։ Այս որոշումը պատճառ չէ եղած սակայն , որ կեռ – խաչեր գծուին բոլոր քաղաքներու մէջ ։

ՖՐԱՆՍԱՅԻ Ելմտական նախարար Փի – նէ լրագրողներու կողմէ հարցապնդուե – լով յայտարարեց . — « Զեմ հրաժարած ։ Բայց եթէ մեկնիմ՝ վերջնական պիտի ըլ– լայ ։ Տունս պիտի վերադառնամ եւ այլ – եւս քաղաքականութեամբ պիտի չզբա – ղիմ ։ Զեմ ուզեր որ այլեւս անունս յայ – տարարուի» ։ Անթուան Փինէի կարծիքը այն է , թէ երբ կառավարութիւնը կ'ուզէ փոխել տարի մը առաջուան իր քաղաքա– կանութիւնը՝ պէտք է ըսէ ։ Ամէն պա – րագայի մէջ , հարկ է սպասել որ տը Կոլ Փարիզ վերադառնայ , Տըպրէ – Փինէ վէ– ճին լուծում մը գտնելու համար ։

ՊԵԼՃԻՈՅ Պոտուէն Թագաւորը , պա– տասխանելով Նախագահ տը Կոլի հրաւէ– րին , Յունուար 28ին Փարիզ պիտի գայ , ուր պիտի մնայ երեք օր ։

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Մեր սիրելի մօր եւ քրոջ՝ Տիկին Լուսի Թադոսեանի մահուան առիթով , աշխար– հի ամէն կողմերը գտնուող մեր բարե – կամներէն ստացած ենք հարիւրներով ցաւակցական հեռագիրներ եւ նամակ – ներ ։

Ներկայ պայմաններուն ներքեւ անկա – րելի կը գտնենք մեր այս սիրելի բարե– կամներուն անձնական նամակներով յայտնել մեր շնորհակալութիւնները ի – րենց ազնիւ վերաբերումին համար որով ուզեցին բաժնել եւ թեթեւցնել մեր խոր վիշտն ու ցաւը ։ Մանաւանդ որ անոնց– մէ շատերու հասցէները չունինք ։

Կը խնդրենք մեր բարեկամներէն որ ընդունին այս երկտողը իբրեւ անձնական գնահատանք ու շնորհակալութիւն իրենց անկեղծ զգացումներուն համար ։

Զաւակները՝ ԱՆԻԹԱ ՆԱԶ եւ ՀԱՅԿ ԹԱԴՈՍԵԱՆ , քոյրը՝ (Տիկին) ՆԱԶԵՆԻԿ ՄԱՐՏԻԿԵԱՆ , քեռայրը՝ ԺՈՐԺ ՄԱՐ – ՏԻԿԵԱՆ ։

ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻՆ

Տրակինեանէն Տէր եւ Տիկին Գրիգոր Լօրէնեանի երկուորեակ թոռնիկները՝ Արուսեակ եւ Վարուժան , կը նուիրեն 50 Ն . Ֆր . , ի նպաստ Հայ Կար – միր Խաչի Ֆէօանվիլիէի օդափոխութեան կայանին Նոր Տարուան եւ Ս . Ծնունդի տօներուն առիթով ։

Նոր Տարուան առթիւ Հայ Կարմիր Խա– չի Ֆէօանվիլիէի օդափոխութեան կայա– նին կը նուիրեն.— ։

Այրի Տիկին Վ . Ասլանեան 50 Ն .Ֆր . , Գ . Գ . Սանճեան (Վիլֆրանշ) 50 Ն . Ֆր . , Մ . Թիւթիւնճեան (Սէվրան) 20 Ն . Ֆր . , Մենծիկեան (Մարսէյլ) , Հէքիմեան , Տիկին Փանոսեան (Շամփինեի) , Գ . Գ . Անուշեան , Բիլիճեան (Ֆոնթընէ սու Պուա) , Տիգրան Հաճեան (Նիս) , Տաղ – լարեան (Նիս) 10ական Ն . Ֆր . ։

ՍՏԻՊՈՂԱԲԱՐ

Հայ կին մը սպասուհիի տեղ կը փըն– տռէ Փարիզի մէջ ։
Գրել հետեւեալ հասցէին՝

MADAME S KALKANADJIAN
CHEZ MADAME DEMIRDJIBACHIAN
13, Rue de Bezons, Courbevoie (Seine)



ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Այրի Տիկին մը սենեակ կը փնտռէ , Շամփէռէ կ'աշխատի ։ Հասցէ Տիկին Մանուքեան ,

9, RUE DE L'ARRIVÉE, LA GARENNE - SEINE



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

"ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԷ

Ինչպէս ամէն տարի , այս տարի եւս Օր . Վարդուհի Նորոյեան մէկ տարեկան Յառաջ կը նուիրէ իր հօր՝ Գ . Տիգրան Նորոյեանի (Լիոն) ։

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ
ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻՆ

29րդ տարեկան ցերեկոյթը
Կիրակի , Մարտ 6 , կէսօրէ վերջ ժամը 2 .30ին , Սալ տը լա Շիմի ,

28 bis, Rue St. Dominique, Paris 7ᵉ


"ՅԱՌԱՋ"Ի
ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Ֆրանսա եւ հասարակապետութիւն .—
Տարեկան .— 40 Ն . Ֆր . (4000)
Վեցամսեայ 22 Ն . Ֆր . (2200) ։
Արտասահման .—
Տարեկան 50 Ն . Ֆր . (5000) ։

Բաժանորդագրութիւնները կը վճար – ուին կանխիկ ։

**ԻՏԱԼԻՈՅ** Հանրապետութեան Նախագահ Կրոնքի առողջացած է։ Հռոմի խորհրդային դեսպանը երկրորդ այցելութիւն մը տուաւ Կրոնքիի եւ հաղորդեց թէ Մառէշալ Վորոշիլով պատրաստ է ընդունելու Իտալացի իր պաշտօնակիցը՝ յառաջիկայ Փետրուարին։

**Ժ. ՄԻՈՒԹԵԱՆ** համայնավար կուսակցութեան Կեդրոնական Կոմիտէն կոչ մը հրապարակեց, ուր կը յայտարարուի թէ կուսակցական քարոզչութեան ուժ պէտք է տալ «այնպիսի ատեն մը՝ երբ համայնավարութեան հակառակորդները զօրացուցած են իրենց քարոզչութիւնը»։ Կոչին մէջ կը յիշուի նաեւ այն սկզբունքը՝ թէ «չաշխատողին հաց չկայ»։

**ՍՊԱՆԻՈՅ** Նախագահ Ֆրանքօ տեսակցութիւն մը ունեցաւ Փորթուկալի Նախագահ Թոմասի հետ, երկու երկիրներու սահմանին վրայ։

**ՀՌՈՄԷՆ** կը հաղորդեն թէ Ֆրանսայի ներքին նախարարութիւնը Իտալացի բանուորներուն հրահանգած է երկրէն դուրս ելլել։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տիկին Վարվարէի (Լօռէմիշցի) 10 Ն. Ֆ.ի նուիրատուութիւնը Օհան Հայրապետեանի (Վալանս) մահուան յիշատակին համար։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Գ. Ա. Բաննաեան Երեւանէն կը փնտռէ իր հօրեղբայրը Հայկազ Միքայէլի Բաննաեանը, որ կը կարծուի Ֆրանսա ըլլալ։

× Գ. Գրիգոր Ամալեան Երեւանէն կը փնտռէ Ալեքսան Յովհաննէսի Գրիգորեանը։

× Գ. Կարապետ Գազազեան Երեւանէն կը փնտռէ Գրիգոր Ասուրեանը։

× Տիկին Զապէլ Յակոբի Գասպարեան կը փնտռէ իր եղբայրը Սանասար Յակոբի Գասպարեանը որ ծնած է 1913ին Ոսկեվազ գիւղում, մօր անունն է Աննիկ։

× Տիկին Շուշանիկ Զաքարեան կը փնտռէ իր հօրեղբօր որդին Գառնիկ Յարութիւնի Ղազանճեան։

× Տիկին Լիւսիկ Տիւլկէրեան, ծնեալ Ամպարով, Երեւանէն կը փնտռէ իր ամուսինը Գ. Շաւարշ Տիւլկէրեան, որդի Տիգրանի Բոկտանովաքի (Վրաստան)։

× Տիկին Սիրանոյշ Ղահրամանի Արեւշատեան, Երեւանէն կը փնտռէ իր զաւակը Գէորգի Արեւշատեան, Տարտաբաշվիլի։

× Տիկին Արմաւենի Պետրոսեան, ծնեալ Մշիկեան, կը փնտռէ իր քեռորդին Սուքիաս Սուքիասի Բազանճեանը, երզնկացի։

Փնտռուող վերայիշեալ անձերու հասցէները գիտցողներէն կը խնդրուի տեղեկացնել եկեղեցւոյ դիւանատունը, 15, Րիւ Ժան Կուժոն, Փարիզ (8)։

(Շար.)

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Կազմակերպութիւններէն կը խնդրուի նուիրատուութեանց եւ շնորհակալիքներու ազդերը չարադրել ՆՈՐ ՖՐԱՆՔՈՎ, շփոթութեանց տեղի չտալու եւ վարչութեան աւելորդ աշխատանք չպատճառելու համար։

Շնորհակալութիւն
ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ ԵՒ ՆՈՒԷՐ

Սեր. Նահանգ. Մուրատ Ռուսում. Մարսէյլի մասնաճիւղը խորին ցաւակցութիւն կը յայտնէ ողբ. Յովհ. Թէճիրեանի եւ Ոսկան Քէնտիրեանի մահուան առթիւ, անոնց ընտանեկան բոլոր պարագաներուն։ Այս տխուր առթիւ փոխան ծաղկեպսակի եղած են հետեւեալ նուէրները, Ղազարոսեան քամի Ն. Ֆ., Մարգար Ծերուկեան տաասը Ն. Ֆ., Երանոս Ծերուկեան տասը Ն. Ֆ., Քէնտիրեան տասը Ն. Ֆր, Լէոն Քէնտիրեան տասը Ն. Ֆ., Ֆ. Կ. Խաչ տասը Ն. Ֆ., Լէօն Քէնտիրեան տասը Ն. Ֆ., Կիւլեան 5 Ն. Ֆ., Ղեւոնդ Կիւլեան տասը Ն. Ֆ., Թէճիրեան եղբարք իրենց եղբօր Ոսկանի քառասունքի հոգեհանգստեան առթիւ, Մուրատ Ռուսումնասիրացի կը նուիրեն 50 Ն. Ֆ.։

## "ՅԱՌԱՋ"Ի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Ֆրանսա եւ հասարակապետութիւն.—
Տարեկան.— 40 Ն. Ֆր. (4000)
Վեցամսեայ 22 Ն. Ֆր. (2200)։

Արտասահման.—
Տարեկան 50 Ն. Ֆր. (5000)։

Բաժանորդագրութիւնները կը վճարուին կանխիկ։

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Նոր տարուան առթիւ Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օղափոխութեան կայանին կը նուիրեն.—

Գ. Զառըրճեան 10 Ն. Ֆ., Տէր եւ Տիկ. Էպպէրեան տասը Ն. Ֆ., Գ. Վ. Մոսկոֆեան (Լը Վէզինէ) տասը Ն. Ֆ., Գ. Ալէքս Գիրէճեան (Ալֆորվիլ), Գ. Տէմիրճեան, Գ. Բալուլեան, Գ. Շահմիրեան, Տիկին Հայկուհի Մութաֆեան, Գ. Աքաշեան, Գ. Թօփալեան (Րոմէնվիլ), 10ական Ն. Ֆ.։ Գ. Էրքիլէթեան, Գ. Զ. Գարթեւեան (Սէն Մօռ), Գ. Սողոյեան, Գ. Սարաֆեան (Մէօտօն) 5ական Ն. Ֆ.։







## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Տէր եւ Տիկին Թիէրրիի վերջին ճամբորդութիւններու ընթացքին լուսանկարուած պատկերներու ներկայացում եւ մեկնաբանութիւն։

ԱՂԹԱՄԱՐ, ԱՆԻ, ՀՌՈՄՈՍ, ԿԱՐՍ, ՏԱՅՔ։

Ուրբաթ, Յունուար 15ին, ժամը 8.45, Սանթրոյի սրահին մէջ, 8 ժան Կուժոն փողոց։

Տեղերը սահմանափակ ըլլալով՝ կը խնդրուի այժմէն տոմսերը ապահովել հայկական թերթերու մօտ։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր. 28ին, Շաբաթ երեկոյեան։

Սիփան – Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Ափրիկեանի)։ Ապրիլ 17ին









Imprimerie Spéciale du Journal « Haratch »

Տէր եւ Տիկին Մոլքոն Աւետիս եւ զաւակը՝ Ժիրայր Մելքոն, Տէր եւ Տիկին Խանչերեան եւ զաւակները՝ Անդրանիկ, Մկրտիչ, Ալիս, Այրի Տիկին Մառի Երամեան եւ զաւակը՝ Սեդրակ, Այրի Տիկին Զարման Աժտահարեան եւ Սաքեկա Աժտահարեան եւ զաւակները (Ամերիկա), Սանդուխտ Գէպիրեան, Գ. Գ. Գաղտասար, Աւետիս, Տիկին Նաւասարդ Երամեան, Շահրոզեան, Կէօզիւպէօյիւքեան եւ զաւակները, Յարութիւն, Առաքել, Սիրվարդ, Անահիտ Սիւրմէյեան եւ զաւակները, Քիւռեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Վահրամ Երամեան եւ զաւակը, Այրի Տիկին Վերժին Փչիկեան եւ բոլոր պարագաները կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր եւ ազգականին՝

ԱՑՐԻ ՏԻԿԻՆ ԿՋԻԿԵԱՆԻ

(Ծնեալ Երամեան, Արաբկիրցի
95 տարեկան)

մահը որ տեղի ունեցաւ Կիրակի, Յունուար 10ին:

Յուղարկաւորութիւնը այս Ուրբաթ, ժամը 15·30ին, 9 Րիւ տէ Պասըրան (Մոնմորանսի), կառ տիւ Նորտէն իջնել Անկէն, օթօպիւս 6, Թէրմինիւս Սրրիզիէ:

Մահազդ դրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

Ոչ ծաղիկ, ոչ ծաղկեպսակ:

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Սէն Ժերոմի Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէն ցաւակցութիւններ կը յայտնէ ընկեր Ս. Յարութիւնեանի եւ պարագաներուն իր քեռեկալ Գ. Մ. Տուրդութեանի յանկարծամահուան առթիւ:

## Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐՏԻՉ

Ծնունդի ութօրէնքի եւ Անուանակոչութեան տօնին առթիւ պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ քառաձայն պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի բացեալ Առաքել Փաշա Նուպարի մահուան 6րդ տարեդարձին առթիւ:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր. 28ին, Շաբաթ երեկոյեան

Սիփան – Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Աֆրիկեանի): Ապրիլ 17ին

×

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ
Գեղարուեստական ցերեկոյթը
ՄԱՐՏ 27ԻՆ

×

Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ
ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, 21 Փետրուար 1960ին, Հօթէլ Ե·ի պանդոկին սրահներուն մէջ, ժամը 17էն մինչեւ կէս գիշեր:

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Հ. Յ. Դ. Փարիզի Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու բոլոր ընկերները այս շաբաթ՝ 16 Յունուար, ժամը 20·30ին, Մշակոյթի Տան մեծ սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ:

Շարունակութիւն նախորդ ժողովին,

Կը զեկուցանէ ընկեր Հրանտ Սամուէլ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Կեդր. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է նոր տարուան առթիւ հետեւեալ նուիրատուութիւնները:

Գալուստ Կիւլպէնկեան հաստատութենէն ինչպէս ամէն տարի հազար Ն. Ֆ.:

Զարեհ Պէյ Նուպարէ 250 Ն. Ֆ.:

Նոյնպէս տօնածառի հանդէսին Տիկին Աստղիկ Աղնազարեանէ տասը քիլօ պօնպօն եւ չորս հարիւր քաքլէթ չոքոլա: Կոնտոլօ հաստատութիւնէն չորս ծրար պիսկիւի: Տիկ. Սիրանոյշ Զրուանդեանէ 20 Ն. Ֆ.: Ջերմ շնորհակալութիւններ նաեւ գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը բերողներուն — Գ. Թաթուլ Ինճէյեանի եւ Օր. Անի Թարօնի, Ժան Գզրբեանի ու բոլոր միւս դերակատարներուն:

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes
Մեթրօ Փորթ Մայօ

Պաշտամունք այսԿիրակի առաւօտ ժամը 10·45ին:

Կը խօսի Վերապատուելի ՍԻՄԼԵԱՆ

## ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ ՄԱՐՍԷՅԼ

Պաշտամունք՝ այս կիրակի, Սէն Ժէրոմ, ժամը 9.30ին: Ռիւ Ժէմափ՝ ժամը 10.45ին:

Կը քարոզէ Վերապատուելի Հելվաճեան:



## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Կազմակերպութիւններէն կը խնդրուի նուիրատուութեանց եւ շնորհակալիքներու ազդերը շարադրել ՆՈՐ ՖՐԱՆՔՈՎ, շփոթութեանց տեղի չտալու եւ վարչութեան աւելորդ աշխատանք չպատճառելու համար:

Շնորհակալութիւն
ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի

## "ՅԱՌԱՋ"Ի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Ֆրանսա եւ հասարակապետութիւն.—
Տարեկան.— 40 Ն. Ֆր. (4000)
Վեցամսեայ 22 Ն. Ֆր. (2200):
Արտասահման.—
Տարեկան 50 Ն. Ֆր. (5000):
Բաժանորդագրութիւնները կը վճարուին կանխիկ:

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Հովանաւորութեամբ Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութեան, ի նպաստ հայեցի դաստիարակութեան, Կրթ. յանձնախումբի կազմակերպած անմախրնթաց զուտ հայկական պարահանդէսը տեղի պիտի ունենայ Շաբաթ, Յունուար 23ին, ժամը 21էն մինչեւ լոյս:

ՔԱՂԱՔԱՊԵՏԱԿԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ, ՌԻՒ ՎՈԼԹԷՐ:

Բոլոր հայրենակիցներուն գոհացում տալու նպատակով՝

## ՏԵՏԷՃԵԱՆ ԵՒ ՏԻՆԱՄԻՔ ՃԱԶ

Երկու նուագախումբով տեղի պիտի ունենան հայկ. եւ եւրոպական պարեր:

ՍՕՍԻ Ֆօլքլօրիկ խումբը՝ ղեկավարութեամբ Տիկ. Յ. ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ

Պիտի ճոխացնէ այս բացառիկ երեկոյթը, իր հայկական հաճելի, ինքնուրոյն պարերով եւ երգերով:

Սիրով կը հրաւիրուի հայ ժողովուրդը անխտիր:

ՃՈԽ ԵՒ ԴԻՒՐԱՄԱՏՉԵԼԻ ՊԻՒՖԷ

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան:

Փինէի աթոռը կը դրաւէ Ֆրանսայի դրամատան ընդհանուր կառավարիչը՝ Վիլֆրիտ Պաումկարթները որ այդ պաշտօնին գլուխն էր 11 տարիէ ի վեր ։ Փարիզ ծնած է 1902ին, բողոքական քաղքենի ընտանիքէ ։ Ինք ալ, Փինէի նման, մաս կը կազմէ անոնց որոնք երկրին աչքին «ապահով արժէքներ»ն են ։ Ունենալով հանդերձ ընկերային ազատական դաղափարներ, դէմ է օրավարձքերու համար դիւրին քաղաքականութեան մը հաստատման ։

Իր յայտարարութեան մէջ, ճշդեց թէ առանց ուրախութեան է որ կը ստանձնէ իր նոր պաշտօնը, իր կարծիքով այդ գործին գլուխը պէտք է ըլլան անցեալ ունեցող եւ փորձառու մարդիկ ։ Պաումկարթները աւելցուց թէ ամէն կերպով իրեն ապահովութիւն տրուած է որ պիտի շարունակէ Փինէի քաղաքականութիւնը ։

Ե. Հանրապետութեան առաջին տագնապն է որ կը լուծուի, բայց ժողովուրդը դժուար կրնայ հասկնալ թէ ինչ կ'անցնի կը դառնայ երբ պաշտօնագուրկ կ'ըլլայ մէկը որուն վարած քաղաքականութիւնը կը գնահատուի որ կոյր պաշտօնական յայտարարութեան մէջ ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՁԻԻՆ – ՁՄԵՌ բովանդակ Ֆրանսայի մէջ ։ Ոչ միայն Փարիզի, այլեւ Քոթ տ'Ազիւրի մէջ անգամ ձիւնեց ։ Սաստիկ ցուրտ ամէն կողմ ։ Ճամբաները սառոյցի խաւով պատուած են ։ Արկածները, դժբախտաբար, հետզհետէ կ'աւելնան, բազմաթիւ մահերու պատճառ դառնալով ։ Ցուրտ – ձմեռ է նաեւ Եւրոպայի միւս շրջաններուն մէջ ։ Պերլինի մէջ 178 արկածներ պատահեցան վերջին 30 ժամերու ընթացքին ։ Ճամբաները փակուած կամ սառուցապատ են նաեւ Հռոմի, Ժընեւի, Վիէննայի, Պելկրատի եւ Քոփենհակի մէջ ։

ՅԱՐԴԱՆԱՆ մերժեց ընդունիլ Արաբական Լիկայի որոշումը՝ Ֆրանսան տնտեսական պոյքոթի ենթարկելու համար ։ Տնտեսական նախարար Թէյրի այս առթիւ յայտարարեց թէ Ֆրանսական տնտեսութիւնը որեւէ ազդեցութիւն չի կրեր նման որոշումի մը գործադրութեան պատճառով ։

ԱՆԳԼԻՈՅ մէջ հակագերմանական շարժում մը սկսած է, հակասեմական վերջին միջադէպերուն հակազդելու համար ։ Բրիտանական կարգ մը հաստատութիւններ վործէ արձակուած են իրենց գերմանացի պաշտօնեաները, իսկ մեծ վաճառատուն մը իր ցուցափեղկերէն վերցուցած է գերմանական արտադրութիւնները եւ յետաձգած՝ Գերմանիոյ բրած իր բոլոր ապսպրանքները ։

## ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Հ. Յ. Դ. Փարիզի Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու բոլոր ընկերները այս շաբաթ՝ 16 Յունուար, ժամը 20·30ին, Մշակոյթի Տան մեծ սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ ։

Շարունակութիւն նախորդ ժողովին, կը զեկուցանէ ընկեր Հրանտ Սամուէլ ։



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## "ՅԱՌԱՋ"Ի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Ֆրանսա եւ հասարակապետութիւն.—
Տարեկան.— 40 Ն. Ֆր. (4000)
Վեցամսեայ 22 Ն. Ֆր. (2200) ։
Արտասահման.—
Տարեկան 50 Ն. Ֆր. (5000) ։
Բաժանորդագրութիւնները կը վճարուին կանխիկ ։

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ Կ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Տէսինի կոմիտէն այս Կիրակի կէսօրէ յետոյ ժամը 15ին, Հ. Յ. Դ. Տան մէջ ։ Կը հրաւիրուին նաեւ Փոն տը Շէրիւիի ընկերները ։

ՎԻԷՆԻ կոմիտէն այս Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին, Օհանջանեան ակումբը ։

Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի ներկայացուցիչները ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ քառաձայն պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն, ողբացեալ Առաքել Փաշա Նուպարի մահուան 6րդ տարեդարձին առթիւ ։

×

Այրի Տիկին Եղիա Ալիքսանեան եւ ընտանեկան պարագաները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց ողբացեալ ամուսնոյն եւ ազգականին՝

ՄԻՀՐԴԱՏ ԱԼԻՔՍԱՆԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ ։

Ցիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ ։

## Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐՏԻՉ

Ծնունդի ութօրէնքի եւ Անուանակոչութեան տօնին առթիւ պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ ։





## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Հովանաւորութեամբ Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութեան, ի նպաստ եկեղեցւոյ դաստիարակութեան, Կրթ. յանձնախումբի կազմակերպած անմոռանալի զուտ հայկական պարահանդէսը տեղի պիտի ունենայ Շաբաթ, Յունուար 23ին, ժամը 21էն մինչեւ լոյս ։

ՔԱՂԱՔԱՊԵՏԱԿԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ, ՌԻՒ ՎՈԼԹԷՐ ։

Բոլոր հայրենակիցներուն գոհացում տալու նպատակով՝

### ՏԵՍԷՃԵԱՆ ԵՒ ՏԻՆԱՄԻՔ ՃԱԶ

Երկու նուագախումբով տեղի պիտի ունենան հայկ. եւ եւրոպական պարեր ։ ՍՕՍԻ ֆոլքլորիկ խումբը՝ ղեկավարութեամբ Տիկ. Յ. Քիւրթնէրեանի ։ Պիտի ճոխացնէ այս բացառիկ երեկոյթը, իր հայկական հանելի, ինքնուրոյն պարերով եւ երգերով ։

Սիրով կը հրաւիրուի հայ ժողովուրդը անխտիր ։

ՃՈԽ ԵՒ ԴԻՒՐԱՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐ

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ | | |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ | | |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » | » | » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » | » | » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » | » | » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » | » | » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » | » | » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » | » | » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆր. | » | » | » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են ։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է ։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան ։

Տէր Սիմոնեան, Աւետիսեան, Տակառեան եւ Շիրինեան ընտանիքները կը ծանուցանեն իրենց մօր, հօրաքրոջ եւ ազգականին՝

ԱՅՐԻ ՏԻԿ. ՀՌԻՌՓ ՏԷՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ
(Մշոյ խասգիւղացի)

մահը, որ տեղի ունեցաւ Շաբաթ, Յունուար 16ին, Մարսիլիոյ մէջ :

ՅԱՌԱՋ.— Մեր ցաւակցութիւնները Տակառեան եւ Շիրինեան ընտանիքներուն :

---

Այրի Տիկին Հայկանուշ Գալուստեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Համբարձում Գալուստեան (Հայաստան), Ժագ եւ Միշէլ Գալուստեան, Տէր եւ Տիկին Վան Մոլ (Պրիւսէլ), կը ծանուցանեն իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՅԱՐՈՒԹԻՒՆ ԳԱԼՈՒՍՏԵԱՆԻ
(63 Տարեկան)

մահը, որ տեղի ունեցաւ Յունուար 17ին :

Յուղարկաւորութիւնը այս Չորեքշաբթի ժամը 14ին, իր բնակարանէն, 9 Րիւ Մատըլէն, Իսի լէ Մուլինօ :

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել :

---

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅ - ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Սեպտեմբեր – Հոկտեմբեր (թիւ 213 – 214) նոյն եւ այլազան բովանդակութեամբ.—

Դեղահատի զարը (Հայ-Բոյժ).— Առողջութիւն բարոյական ուժով (Տոքթ. Պըմոէլ).— Առանց ցաւի ծննդաբերութիւն (Փրոֆ. Մարգարեան).— Ստամոքսի խոց (Տոքթ. Աչըեան).— Ջուրը Հայաստանի մէջ, ձկնորսութեան ձեւերը, ձուկի տեսակները եւ անոնց համը (Փիրուզեան).— Ի՞նչ գիտէք ճանճերու մասին (Տոքթ. Այվազեան).— Աւաղ ի վերայ ճանճի (Մինաս Թոխաթցի).— Ականջի ցաւը... քանի՛ երբ նշան (Տոքթ. Ասֆանդ).— Երատներ լեարդի հիւանդներուն (Տոքթ. Գալուստեան).— Բերանը ծունցաւ... (Տոքթ. Քորեն).— Ոտքերը չեն բաներ (Տոքթ. Ազատեան).—Ջղեար կամ մուշմուլա, պատմութիւնը եւ սննդական ու բժշկական արժէքը (Շ. Նարդունի).— Բարի ախորժակ, տիկիններ եւ պարոններ (Տոքթ. Շ. Օնատ):

Բաժանորդագրութեան պայմաններ.— Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք) : Արտասահման 20 նոր ֆրանք (2000 ֆր., երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար 37,5 նոր ֆրանք (3750 ֆր.):

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

---



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## «ՅԱՌԱՋ»Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

ՏԷՍԻՆԷՆ Պ. Սարգիս Մաթթէոսեան իր մօրը՝ ութսունամեակին առթիւ 10 Ն.Ֆ. կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման :

## "ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Նոր Տարուան առթիւ Պ. Սեպուհ Արզումանեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր ծնողքին (Վիէն):

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կ. Խաչի Գոմոնի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Այրի Տիկին Հայկանոյշ Երամեանէ 10 Ն. Ֆ. իր հօր Պ. Մելքոն Պէրպէրեանի եւ ամուսնոյն ողբացեալ Մինաս Երամեանի հոգւոյն ի յիշատակ :

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Կ. Թորոսեան (Մարսէյլէն) ցաւակցութիւն կը յայտնէ Յովհաննէս Գոյաճեանի իր զաւկին կսկծալի մահուան առթիւ, ցաւակցութիւն՝ նաեւ Օհան եւ Մարտիրոս Գոյաճեանի :

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԳՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Ֆ. Կ. Խաչի Գորտոյի մասնաճիւղը Մանուկներու Օրը կը տօնէ, այս Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 3·30ին, Սալ Քանթոնալ, Րիւ տը Նիւի, Գորտօ, Գասքիտ :

ՃՈԽ ՅԱՅՏԱԳԻՐ.— Դպրոց մը փոխեր (արտասանութիւն), Գայլուսակը (արտասանութիւն), Աչք կապուկ (արտասանութիւն) : Խմբերգ, արտասանութիւն եւայլն :

Մուտքը ազատ է :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր. 20ին, Շաբաթ երեկոյեան :

Սիփան – Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Ափրիկեանի): Ապրիլ 17ին

×

Փարիզի Համնոյ Հայր. Միութեան տարեկան պարահանդէսը Մարտ 13ին, կիրակի ժամը 16էն մինչեւ 24, Ամպասատէօրի շքեղ սրահին մէջ :



## "ՅԱՌԱՋ"Ի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Ֆրանսա եւ հասարակապետութիւն.— Տարեկան.— 40 Ն. Ֆր. (4000) վեցամսեայ 22 Ն. Ֆր. (2200).

Արտասահման.— Տարեկան 50 Ն. Ֆր. (5000):

Բաժանորդագրութիւնները կը վճարուին կանխիկ :

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղին, կը տօնուի Կիրակի (Յունուար 24), կէսօրէ յետոյ ժամը 15ին Սէրքըլ Կաթոլիքի սրահին մէջ :

Երգ, արտասանութիւն, եւրոպական եւ հայկական պարեր, երեք դպրոցներու աշակերտութեան կողմէ :

Նուէրներ փոքրիկներուն:

Մուտքը ազատ է :



## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Հովանաւորութեամբ Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութեան, ի նպաստ հայեցի դաստիարակութեան, կրթ. յանձնախումբի կազմակերպած անձնախընթաց զուտ հայկական պարահանդէսը տեղի պիտի ունենայ Շաբաթ, Յունուար 23ին, ժամը 21էն մինչեւ լոյս:

ՔԱՂԱՔԱՊԵՏԱԿԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ, ՌՈՒ ՎՈԼԹԷՐ :

Բոլոր հայրենակիցներուն գոհացում տալու նպատակով՝

### ՏԷՏԷՃԵԱՆ ԵՒ ՏԻՆԱՄԻՔ ՃԱԶ

Երկու նուագախումբով տեղի պիտի ունենան հայկ. եւ եւրոպական պարեր :

ՍՕՍԻ ֆոլքլորիկ խումբը՝ ղեկավարութեամբ Տիկ. Յ. Քիւրթնէրեանի

Պիտի ճոխացնէ այս բացառիկ երեկոյթը, իր հայկական համեղի, ինքնուրոյն պարերով եւ երգերով :

Սիրով կը հրաւիրուի հայ ժողովուրդը անխտիր :

ՃՈԽ ԵՒ ԴԻՒՐԱՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐ

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ (ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ)

## ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, 24 ՅՈՒՆՈՒԱՐ, ԺԱՄԸ 15 – 24

**LES AMBASSADEURS**

**3, Avenue Gabriel, Champs-Elysées**

Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր

PIERRE DIEUZEY & SES CAPETIENS
JAZZ NEW ORLÉANS
PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS

Գեղարուեստական բաժին — Մուտք 5 Ն. Ֆ.

Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի Կեդրոնատեղին, Էլիզէ 67 – 03 :

Կը խնդրուի նկատի ունենալ թէ վարձուած սեղանները գրաւուած պէտք է ըլլան ամէնէն ուշը ժամը 19·30ին: Հակառակ պարագային պարահանդէսին կազմակերպիչ յանձնախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ :

Կոմսուհի Փաթթիմոնիօ եւ զաւակները,
Տիկին Անի Էմմէրեան եւ զաւակները,
Տէր եւ Տիկին Ռափայէլ Էմմէրեան եւ զաւակները,
Տէր եւ Տիկին Փօլ Էմմէրեան
Եւ ընտանիկան բոլոր պարագաները կը խնդրեն ծանուցանել՝

## ՏԻԿԻՆ ՊՕՂՈՍ ԷՄՄԷՐԵԱՆԻ
(Ծնեալ ԷԼԻԶ ԿԻՒՄԻՒՇԿԵՐՏԱՆ)

մահը, որ տեղի ունեցաւ Յունուար 15ին, 78 տարեկանին, Փարիզ :

Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Յունուար 18ին, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ընտանեկան նեղ շրջանակի մէջ :

*Կը խնդրուի ներկայս իբրեւ մահազդ ընդունիլ :*

62, AVE. RAYMOND POINCARÉ, PARIS - 16

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղը իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Թագուհի Օհանեանի, իր սիրելի հօր՝ Գ. Ստեփան Պաղտասարեանի դառն մահուան առթիւ :*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Փոքրիկն Կորին Գայթանճեանի (Լիոն) կնունքին առթիւ, կնքահօր՝ Գ. Լեւոն Գայթանճեանէ (Մարսէյլէն) շնորհակալութեամբ ստացուած է Ֆ. Կ. Խաչի Տէսինի դպրոցին համար 30 Ն. Ֆ. :*

×

*Իրենց հօր՝ Գ. Ստեփան Պաղտասարեանի (Լիոն) մահուան առթիւ, Տէր եւ Տիկին Արամ Օհանեան քսան Ն. Ֆ., կը նուիրեն Կապ. Խաչի օղափոխութեան կայանին :*

*Նոյն տխուր առթիւ՝ օղափ. կայանին Տիկին Թագ. Աբրահամեան հինգ Ն. Ֆ., Տիկին Աշխէն Գօյաճեան տասը Ն. Ֆ., իսկ Գ. Կարօ Ժամկոչեան — Ֆ. Կապ. Խաչի Տէսինի մասնաճիւղին՝ քսան Ն. Ֆ., Ֆ. Կ. Խաչի Տէսինի դպրոցին՝ 20 Ն. Ֆ. :*

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ԼԻՈՆ. — Հ. Յ. Դ. «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր. 20ին, Շաբաթ երեկոյեան :*

*Սիփան — Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Ափրիկեանի) : Ապրիլ 17ին*

*ԳՈՄՈՆ. — Այս Կիրակի, սկիզբ ժամերգութեանց առաւօտեան 8.30ին, Ս. Պատարագ 10 : Հանդիսաւոր հոգեհանգիստ՝ ընդ հանգուցեալ Տիկին Վալանթին Զամպաքճեանի կէսօրէ ժամը 11.45ին :*

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

*Հայ Կարմիր Խաչի տարեկան — ցերեկոյթ պարահանդէսին առթիւ Ֆէսանվիլէի օղափոխութեան կայանին կը նուիրեն. —*

*Գ. Գ. Վահէ Ֆրէնկեան հարիւր Ն. Ֆ., Լեւոն Վարժապետեան, Ա. Հարենց, Ճէվահիրճեան, Խանճեան քսանական Ն. Ֆ., Նիկողոսեան, Ճէրանեան, Ղազարոսեան, Տէր եւ Տիկին Բապուճեան տասնական Ն. Ֆ., Տիկին Ս. Բէլըրմէ 5 Ն. Ֆ. :*

## ԷԼԷԿՏՐԱԳԷՏ ԼԱՒ ԱՐՀԵՍՏԱՒՈՐ ՄԸ

*Պատրաստ է ստանձնելու, նպաստաւոր պայմաններով էլէկտրական գետնղման աշխատանքներ շէնքերու մէջ :*
*Դիմել՝ Տ. ՖԻԼԱՖԵԱՆԻ,*

36, RUE DE SAUMUR
ARNOUVILLE-LES-GONESSE - S. & O.

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Տէրտէրեան Թորոս Ցակոբի կը փնտռէ Շահինեան Մուկուչ Նիկոլի, ծնած 1915 կամ 1919 թուին Հայաստան՝ Նոր Պայազիտի մէջ : Շահինեան Մուկուչի քոյրը Արմենուհի Նիկոլի Շահինեանը՝ ներկայիս Տէրտէրեան Թորոսի եղբօր կինն է :*

*Մուկուչ անյայտացած է 1942 թուին : Կը կարծուի ըլլալ Ֆրանսա կամ Ամերիկա : Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել հետեւեալ հասցէին, Թորոս Տէրտէրեան,*

5, Rue des Déportés, Colombes (Seine)

*Կը խնդրուի ամերիկահայ թերթերէն արտատպել :*

# Հ. Յ. Դ.
## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՍԱՐՍԷԼ. — Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ շրջանի ընկերները, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Սարսէլի ծանօթ հաւաքատեղին : Պարտաւորիչ ներկայութիւն :*

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ
### ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղին, կը տօնուի Կիրակի (Յունուար 24), կէսօրէ յետոյ ժամը 15ին Սէրժըլը Կաթոլիքէի սրահին մէջ :*

*Երգ, արտասանութիւն, եւրոպական եւ հայկական պարեր՝, երեք դպրոցներու աշակերտութեան կողմէ :*

*Նուէրներ փոքրիկներուն :*

*Մուտքը ազատ է :*

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ՊՈՐՏՕՅԻ ՄԷՋ

*Ֆ. Կ. Խաչի Պորտոյի մասնաճիւղը Մանուկներու Օրը կը տօնէ, այս Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 3.30ին,* Սալ Քանթոնալ, Րիւ տը Նիւի, Պորտօ, Պաստիտ :

*ՃՈԽ ՅԱՑՏԱԳԻՐ. — Դպրոց մը փոխեր (տրամախօսութիւն), Պայուսակը (տրամախօսութիւն), Աշխ կապուկ (տրամախօսութիւն) : Խմբերգ, արտասանութիւն եւայլն :*

*Մուտքը ազատ է :*

## ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ
## ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ ՄԱՐՍԷՅԼ

*Պաշտամունք՝ այս կիրակի, Սէն Ժէրոմ, ժամը 9,30ին : Թիւ Ժէմափ՝ ժամը 10,45ին :*

*Կը քարոզէ* Վերապատուելի Հելվաճեան :



Imprimerie Spéciale du Journal « Haratch »



## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
## ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Հովանաւորութեամբ Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութեան, ի նպաստ հայեցի դաստիարակութեան, Կրթ. յանձնախումբի կազմակերպած աննախընթաց զուտ հայկական պարահանդէսը տեղի պիտի ունենայ Շաբաթ, Յունուար 23ին, ժամը 21էն մինչեւ լոյս :

ՔԱՂԱՔԱՊԵՏԱԿԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ, ՌԻՒ ՎՈԼԹԷՐ :

*Բոլոր հայրենակիցներուն գոհացում տալու նպատակով՝*

## ՏԷՏԷՃԵԱՆ ԵՒ ՏԻՆԱՄԻՔ ՃԱԶ

*Երկու նուագախումբով տեղի պիտի ունենան հայկ. եւ եւրոպական պարեր,*

*ՍՕՍԻ ֆօլքլօրիկ խումբը՝ ղեկավարութեամբ* ՏԻԿ. Յ. ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ

*Պիտի ճոխացնէ այս բացառիկ երեկոյթը, իր հայկական հանելի, ինքնուրոյն պարերով եւ երգերով :*

*Սիրով կը հրաւիրուի հայ ժողովուրդը անխտիր :*

ՃՈԽ ԵՒ ԴԻՒՐԱՄԱՏՉԵԼԻ ՊԻՒՖԷ

## ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ
## ՏԱՐԵԿԱՆ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ՝ ՓԵՏՐՈՒԱՐ 21

HOTEL GEORGE V-Ի ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

Ժամը 17էն մինչեւ կէս գիշեր — ՊԱՐԻ ԵՐԿՈՒ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

**Cotillons - Tombola - Attractions**

*Խնամուած պիւֆէ սովորական գիներով*

Այժմէն ապահովեցէք ձեր տոմսերը եւ սեղանները Tel. TRO. 03-18 C.C.P. Paris 8019-72

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ (ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ)
## ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, 24 ՅՈՒՆՈՒԱՐ, ԺԱՄԸ 15 – 24

**LES AMBASSADEURS**
**3, Avenue Gabriel, Champs-Elysées**

Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր

PIERRE DIEUZEY & SES CAPETIENS
JAZZ NEW ORLÉANS
PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS

Գեղարուեստական բաժին — Մուտք 5 Ն. Ֆ.

*Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի Կեդրոնատեղին, Էլիզէ 67 – 03 :*

*Կը խնդրուի նկատի ունենալ թէ վարձուած սեղանները գրաւուած պէտք է ըլլան ամէնէն ուշը ժամը 19.30ին : Հակառակ պարագային պարահանդէսին կազմակերպիչ յանձնախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ :*

րիշներ ըրին խնձմէ առաջ եւ որոնց օգ-
նեցի, կ'անգիտանամ արգելքները » :

Գիտոյի դէմ եղած արգելքը բողոքի շարժումներ յառաջ բերած է Ալժերիոյ մէջ : «Ազգային շարժումներու համա-ձայնութեան կոմիտէն» :Միստ բողոքագիր մը հրատարակած է շեշտելով թէ՝ մինչ Ֆելլակաները կ'ընդունուին մասնակցե-լու համար վաղուան Ալժերիոյ քաղաքա-կանութեան, «Ազգայիններ » իրենց տար-րական ազատութիւններէն զրկուած են : Զեկոյցը կ'աւելցնէ.— «Նման որոշում-ներ յստակօրէն ցոյց կու տան թէ դէպի քաղաք. Տիէն-Պիէն-Ֆու մը կ'երթանք : Եւ կոմիտէն կը հրաւիրէ ժողովուրդը որ արթուն մնայ եւ կը վերանորոգէ իր բա-ցարձակ վստահութիւնը բանակին :

Միւս կողմէ Ալժերիոյ եւ Սահարայի Քրիստոնեայ եւ Մահմետական Միու-թիւնը յայտարարեց .— Փինէի պաշտօ-նազրկումէն, Զօր. Մասիւի կարգի հրա-ւիրուելէն ետք, Պետութեան Ղեկավարին այս մինատիրական որոշումը ցոյց կու-տայ կացութեան չափազանց ծանրակշիռ հանգամանքը եւ վարչաձեւին ինքզինքը կորսնցուցած ըլլալը » :

Ալժերիոյ կուիներուն սկսելէն ի վեր, առաջին անգամ ըլլալով գրաքննութիւն հաստատուեցաւ եւ Օրանի թերթերը գրաքննութենէ կ'անցնին :

Նախկին Ռազմիկներու համաձայնու-թեան կոմիտէն զեկոյց մը հրատարակե-լով կ'ըսէ «ժողովուրդը պէտք է գիտնայ թէ զինքը ուր կ'առաջնորդեն » :

Հինգշաբթի իրիկուն կ'ըսուէր նաեւ թէ Մասիւ պաշտօնանկ եղած է բայց Տը-յուվրէի կը հերքէր :

Ֆրանսական մամուլը չի ծածկեր իր մտահոգութիւնը ի տես այս կացութեան : Մինչ աջակողմեան եւ աջ թերթերը չեն գիտեր ինչ մտածել կացութեան զար-գացման մասին, ձախ թերթերը, մանա-ւանդ Իւմանիթէն իր ուրախութիւնը կը յայտնէ Գիտոյի դէմ ձեռք առնուած մի-ջոցին առթիւ եւ շատ բան կը սպասէ տը Կոլի «աղատական» քաղաքականութենէն : Զօրավարին հետեւողներն ալ այսօր վե-րապահ են որովհետեւ յստակ չէ իրենց համար տը Կոլի ծրագիրը :

---

ՄԱՐՍԷՅԼ.— Սահակ Գաբրիէլեան եւ զաւակները Տէր եւ Տիկին Տէրոյեան, կը ծանուցանեն իրենց կնոջ, մօր եւ խնա-միին՝

ԱՆՆԱ ԳԱԲՐԻԷԼԵԱՆԻ
(Ծնեալ Նալպանտեան)

մահը, որ տեղի ունեցաւ 21 Յունուար, իր բնակարանը, 38 Պուլվ. Շարլը :

Յուղարկաւորութիւնը այսօր, Շա-բաթ, Յունուար 23 : Թափօրը կը մեկնի տունէն ժամը 16ին, յուղարկաւորու-թիւնը ժամը 17ին Փրատոյի Մայր Եկեղեցիին մէջ, ուրկէ մարմինը կ'ամ-փոփուի Ս. Փիէրի գերեզմանատունը :

---

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Փոքր տ'Իթալիի մասնա-ճիւղը իր ցաւակցութիւնը կը յայտնէ ըն-կերուհի Սուլթան Գրիգորեանի, իր սի-րեցեալ զաւկին Արտաշէս Գրիգորեանի արկածալի տխուր մահուան առթիւ :

---

## ԱՆԳԼԵՐԷՆԻ ՄԱՍՆԱՒՈՐ ԴԱՍԵՐ

Հայ երիտասարդ մը կը ստանձնէ անգ-լերէնի մասնաւոր դասեր :
Դիմել ՍՈՂՈՄՈՆ ԱԲԵԼԵԱՆԻ,
13, Rue de la Tour d'Auvergne, Paris 9.

---

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Տէրտէրեան Թորոս Յակոբի կը փնտռէ Շահինեան Մուկուչ Նիկոլի, ծնած 1915 կամ 1919 թուին Հայաստան՝ Նոր Պայա-զիտի մէջ : Շահինեան Մուկուչի քոյրը Արմենուհի Նիկոլի Շահինեանը՝ ներկա-յիս Տէրտէրեան Թորոսի եղբօր կինն է :

Մուկուչ անյայտացած է 1942 թուին : Կը կարծուի ըլլալ Ֆրանսա կամ Ամերի-կա : Լուր ունեցողներէն կը խնդրուի ի-մացնել հետեւեալ հասցէին, Թորոս Տէրտէրեան,

5, Rue des Déportés, Colombes (Seine)

Կը խնդրուի ամերիկահայ թերթերէն արտատպել :

---

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Ֆ. Կ. Խաչի Պորտոյի մասնաճիւղը Մանուկներու Օրը կը տօնէ, այս Կիրա-կի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 3·30ին, Սալ Քանթոնալ, Րիւ տը Նիւի, Պորտօ, Պաստիտ :

ՃՈԽ ՅԱՅՏԱԳԻՐ.— Դպրոց մը փո-խեր (արամախօսութիւն), Պայուսակը (տրամախօսութիւն), Աչք կապուկ (տը-րամախօսութիւն) : Խմբերգ, արտասա-նութիւն եւայլն :
Մուտքը ազատ է :

---

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյն մէջ հոգեհանգստ-եան պաշտօն պիտի կատարուի եկեղեցա-չէն եւ մեծ բարերար ողբացեալ

ԱՂԵՔՍԱՆԴՐ ՄԱՆԹԱՇԵԱՆԻ
եւ ՄԱՆԹԱՇԵԱՆ

գերդաստանի համայն ննջեցեալներուն հոգւոյ հանգստեան :

---

## ՇԱՒԻՂ

Եկեղեցիին յառաջիկայ պատարագին թուականը պիտի յայտարարուի յաջոր-դով :

---

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շը-նորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.— Արտաւազդ վրդ. Թրթռեանէ 10 Ն. Ֆ., Փարիզէն Սէվրանէն Տիկին Գէորգեանէ 10 Ն. Ֆ., Տիկին Հայկանոյշ Բարսեղեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի.— Փարի-զէն Տէր եւ Տիկին Պետրոսեան հարիւր Ն. Ֆ., Պ. Վարդգէս Զալըգեանէ 20 Ն. Ֆ., Տիկին Աղնիւ Եազըճեանէ 20 Ն. Ֆ. :

---



## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ
### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղին, կը տօնուի Կիրակի (Յունուար 24), կէսօրէ յետոյ ժամը 15-ին Սէրքըլ Կաթոլիքի սրահին մէջ :

Երգ, արտասանութիւն, եւրոպական եւ հայկական պարեր, երեք դպրոցներու աշակերտութեան կողմէ :

Նուէրներ փոքրիկներուն :

Մուտքը ազատ է :

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՍԱՐՍԷԼ.— Հ. Յ. Դ. «Վարդան» են-թակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ շրջանի ընկերները, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2·30ին, Սարսէլի ծանօթ հա-ւաքատեղին : Պարտաւորիչ ներկայու-թիւն :

---

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
## ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Հովանաւորութեամբ Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութեան, կրթ. յանձնախումբի կազմակերպած ի նպաստ հայեցի դաստիարակութեան, աննախընթաց զուտ հայկական պարահանդէսը տեղի պիտի ունենայ Շաբաթ, Յունուար 23ին, ժամը 21էն մինչեւ լոյս :

ՔԱՂԱՔԱՊԵՏԱԿԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ, ՌԻՒ ՎՈԼԹԷՐ :

Բոլոր հայրենակիցներուն գոհացում տալու նպատակով՝

### ՏԷՏԷՃԵԱՆ ԵՒ ՏԻՆԱՄԻՔ ՃԱԶ

Երկու նուագախումբով տեղի պիտի ունենան հայկ. եւ եւրոպական պարեր :

ՍՕՍԻ Ֆօլքլօրիկ խումբը՝ ղեկավարութեամբ Տիկ. Յ. ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ

Պիտի ճոխացնէ այս բացառիկ երեկոյթը, իր հայկական հաճելի, ինքնուրոյն պարերով եւ երգերով :

Սիրով կը հրաւիրուի հայ ժողովուրդը անխտիր :

ՃՈԽ ԵՒ ԴԻՒՐԱՄԱՏՉԵԼԻ ՊԻՒՖԷ

---

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ (ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ)
## ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, 24 ՅՈՒՆՈՒԱՐ, ԺԱՄԸ 15 – 24

**LES AMBASSADEURS**
**3, Avenue Gabriel, Champs-Elysées**

Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր

PIERRE DIEUZEY & SES CAPETIENS
JAZZ NEW ORLÉANS
PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS

Գեղարուեստական բաժին Մուտք 5 Ն. Ֆ.

Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին, Էլիզէ 67 – 03 :

Կը խնդրուի նկատի ունենալ թէ վար ձգուած սեղանները գրաւուած պէտք է ըլ-լան ամէնէն ուշը ժամը 19·30ին : Հակառակ պարագային պարահանդէսին կազմա-կերպիչ յանձնախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ :

---

Ուրբաթ օր ցոյց մը եղած է Ալժէի մէջ։ Քանի մը հազար հոգի տողանցած են, պոռալով. — «Եթէ պէտք ըլլայ Փարիզ կ'երթանք Մասիւն բերելու» ։

Ուրբաթ իրիկուն կը հաղորդէին նաեւ թէ մառեշալ Ժուէն, որ կառավարութեան զինուորական խորհրդատուն է եւ չէր մասնակցած տաւօտուան ժողովին, Երեքշաբթի օր պիտի ընդունուի տը Կոլի կողմէ ։

✕ Օռռռ եւ Փարի – Ժուր թերթերը գրաւուեցան Ալժերիոյ մէջ նկատի առնելով «Մասիւի խնդիրը» ներկայացնելու իրենց եղանակը։

---

ՓԱՍՏԷՕՐ հաստատութիւնը կը հաղորդէ որ ղումի (կրիփ) համաճարակի քանի մը շրջաններ կան Ֆրանսայի մէջ ։ Կը կարծուի թէ խնդրոյ առարկայ՝ման – րէն՝ ասիական ղումի մանրէն է ։ Մահացու քանի մը պարագաներ եղած են Լիոնի մէջ։ Հիւանդանոցները եւ բուժարանները ծայրէ ծայր լեցուած են ։

ԱՑՍ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ 20.000 ալժերիացի աշխատաւորներ Ֆրանսա եկած են աշխատելու, անոնց թիւը Ֆրանսայի մէջ հասցնելով 205.000ի։ Այս առնչութեամբ Մ. Տըպրէ, միջ – նախարարական նիստի ընթացքին յայտարարեց թէ ոչ միայն անհրաժեշտ կարգադրութիւններ պիտի ըլլան զանոնք յարմար բնակարաններու մէջ տեղաւորելու համար, այլեւ գործ – նական քայլեր ձեռք պիտի առնուին վե – րացնելու «թիթեղաքաղաքները», որոնք մէջտեղ եկած են հոս ու հոն, արժերիացի աշխատաւորներու երկիր հաստատումով։ Անցնող տարեշրջանին, բաւ է նախա – բարապետը, չորս հազար ալժերիացի աշխատաւորներ մասնակիցած են աշ – խատանքի իրենց ճիւղերուն մէջ ։

ՅՈՐԴԱՆԱՆԻ մէջ 56 համայնավարներ ձերբակալուած են։ Անոնց մէջ կը գտնուին, բժիշկներ, ղասատուներ եւ փաստաբաններ ։

---

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի Աղքատախնամի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները ի նպաստ զոյգ հայկական ծերանոցներուն Տոքթ. Հ. Գալճեանի մօր մահուան առթիւ (Երեւան)։

Գ. Կ. Թուլումճեան 25 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Վ. Վ. Քէօքճեան եւ Գ. Տիրան Ոսկերիչեան 50 Ն. Ֆ., Տիկին Մ. եւ Օր. Ա. Գրիգորեան 30 Ն. Ֆ., Տիկին Ա. Աստուրեան եւ զաւակները 30 Ն. Ֆ.։

Գ. Կ. Թուլումճեան Տիկին Փառանձեմ Վէզիրեանի մահուան առթիւ ծերանոցներուն՝ 25 Ն. Ֆ.։

Տէր եւ Տիկին Ստեփան Հայէրեան, նպաստ Աղքատախնամին 50 Ն. Ֆ.։

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
(ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ)

ՄԱՐՏ 13 ԻՆ



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը, Մանուկներու Օրը կը տօնէ մեծ պատ – րաստութեամբ ։

Կիրակի (31 Յունուար), ժամը 15ին, Ռիւ Ժէի սրահին մէջ։

Կապոյտ Խաչի դպրոցի աշակերտու – թեան կողմէ գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին ;

Կը ներկայացուի Յիսուսի Ծնունդը՝ երգախառն գեղեցիկ պատկերներով ։ Տե – ղի կ'ունենան խմբերգներ, արտասանու – թիւններ, տրամախօսութիւն, եւ մանկա – կան զաւեշտ ։

Աւանդական Կաղանդ Պապան նուէր – ներ կը բաժնէ, սրահին մէջ ներկայ եղող բոլոր փոքրիկներուն ։

Մուտքը ազատ է ։ Սիրով կը հրաւիր – ուին Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընաժի հայրենակիցները ։

---

### ՆՈՒԷՐՆԵՐ

Տէր եւ Տիկին Օհան Տակառեան քսան Ն. Ֆ. կը նուիրեն Հայ Մշակոյթի Տան։ Հոռոմ Տէր Սիմոնեանի կսկծալի մահ – ուան առթիւ ։ (Ստանալ Յառաջէն)։

Այրի Տիկին Ամփիւ Տէրոյեան Հոռոմ Տէր Սիմոնեանի մահուան առթիւ տասը Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Պանեէօ Քաշանի մասնաճիւղին ։

---

### "ՅԱՌԱՋ"Ի
### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Ֆրանսա եւ հասարակապետութիւն .—
Տարեկան .— 40 Ն. Ֆր. (4000)
Վեցամսեայ 22 Ն. Ֆր. (2200)։
Արտասահման .—
Տարեկան 50 Ն. Ֆր. (5000)։
Բաժանորդագրութիւնները կը վճար – ուին կանխիկ ։



### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻՆ

29րդ տարեկան ցերեկոյթը

Կիրակի, Մարտ 6, կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Սալ տը լա Շիմի,

28 bis, Rue St. Dominique, Paris 7<sup></sup>

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ .— Հ. Յ. Դ. «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր. 20ին, Շաբաթ երեկոյեան ։

Սիփան – Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Աֆրիկեանի)։ Ապրիլ 17ին

### ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վալանսի Նոր Սերունդի «Տ. Միսաքեան» խումբին կողմէ ։

Յունուար 30, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ լոյս ։

**Salons de l'Hôtel-de-la-Croix d'Or**

Place de la République

Նուագախումբ՝

MODERN - JAZZ - QUINTETTE

### ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մանաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

### 1960Ի "ԳՈՅԱՄԱՐՏ" ՕՐԱՑՈՅՑ-ԱԼՊՈՄԸ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐ ՈՒՆԴԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԻՆ

Հ. Յ. Դ. 70ԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ — Ընտիր թուղթով .— 13 էջ

Շքեղ նկարներ, գրական եւ պատմական նիւթերով, ճոխ բովանդակութիւն ։

ԳԵՂԱԶԱՐԴ ԵՒ ԳՈՒՆԱՒՈՐ ԿՈՂՔ

Բացառիկ խնամքով եւ ճաշակով պատրաստուած այս ՕՐԱՑՈՅՑ – ԱԼՊՈՄԸ պիտի կազմէ ամէն հայկ. տան զարդը ։

Գին 500 փրանք

Փարիզի համար դիմել՝ LIBRAIRIE H. SAMUELIAN 51, Rue Mr.-le-Prince, Paris 6e

Կը ծախուի նաեւ Յառաջի մօտ ։

### ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ՝ ՓԵՏՐՈՒԱՐ 21

HOTEL GEORGE VԻ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

ժամը 17էն մինչեւ կէս գիշեր — ՊԱՐԻ ԵՐԿՈՒ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

**Cotillons - Tombola - Attractions**

Խնամուած պիւֆէ սովորական գիներով

Այժմէն ապահովեցէք ձեր տոմսերը եւ սեղանները Tel. TRO. 03-18 C.C.P. Paris 8019-72

Մուտք՝ 5 Ն. Ֆ., ուսանողներու համար 3 Ն. Ֆ. ։

պատակ քաղաքականութենէն, ու համոզուած էին որ զօրաւորանհատականութեան եւ տեսակէտներու տէր՝ Զօրավարը միայն կարող պիտի ըլլայ նպաստաւոր եւ պատուաւոր լուծում տալ Ալժերիոյ տարիներով քաշքշուող կռիւներուն։ Ներկայիս «ուժի ցուցադրութիւն» մը տեղի կ'ունենայ մէկ կողմէ կառավարութեան, միւս կողմէ ծայրայեղ տարրերուն միջեւ։ Աջակողմեանները կը դատապարտեն զօրավարը որ վաճառքի կը հանէ Ափրիկէի Ֆրանս. գաղութները եւ Ալժերիան։

Առ այժմ Զօրավարը եւ իր գլխաւորած կառավարութիւնը կը թուին անյողդողդ կեցած ըլլալ իրենց ուղեգծին եւ տեսակէտներուն վրայ»։

Նոյնիմաստ մտքեր կ'արտայայտէ Լոնտոնի թերթերէն՝ Տէյլի Թէլէկրաֆ որ այս առթիւ կ'աւելցնէ «Զօր. տը Կոլի գըծած Սեպտեմբեր 16ի քաղաքական ծրագիրը միակ ճամբան է որ կը մնայ Ֆրանսային, այլապէս պիտի ստեղծուի անբաղձալի կացութիւն մը իրեն եւ Եւրոպայի համար, հաւասարապէս»։

Նախկին վարչապետ Փօլ Րէնօ յայտարարեց.— «Ֆրանսացիք իրար կը սպաննեն, լաւագոյն լուրն է զոր Ֆելլականները կրնային յուսալ»։

× 1960 Յունուար 24ի հրամանագիրով, ցնոր տնօրինութիւն Սէնի Նահանգին հողամասին վրայ հրապարակային բոլոր հաւաքոյթները արգիլուած են։

× Տը Կոլի կոչը, թռուցիկներու վերածած, օդանաւերով կը սփռեն ամբողջ Ալժերիոյ վրայ։

---

ՎԻԷՆՆԱՅԻ լաւատեղեակ թերթերէն՝ Քուրիէր շատ հաւանական կը գտնէ որ Աւստրիոյ վարչապետը՝ Ռաապ մօտերս տեսակցի Իտալիոյ վարչապետին հետ, բարեկամական եւ իրերահասկացողութեան մթնոլորտի մէջ լուծելու համար հարաւային Թիրոլի հարցը, որ երկար տարիներէ ի վեր վէճերու եւ պահանջներու դուռ կը բանայ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Յանձնախումբը եւ Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացան հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.— Գիթլիս Զրհօր գիւղացի Գ. Մինաս Մկրտիչեանէ 500 Ն. Ֆ., Մարսէյլէն Գ. Զրբաշեանէ 100 Ն. Ֆ., Տոքթ. Ժան Թոնամեանէ 100 Ն. Ֆ., Գ. Մելքոն Թաղէոսեանէ 100 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Արամ եւ Թուրֆանտա Թիւֆէնկճեանէ 50 Ն. Ֆ., Օր. Վերժին Կոստանեանէ 50 Ն. Ֆ., Տիկին Սիմոնեանէ 10 Ն. Ֆ., Տիկին Սէֆէրեանէ 10 Ն. Ֆ., Կրընոպլէն Տէր եւ Տիկին Պետրոս Մութաֆեանէ, փոխան ծաղկեպսակի Հայաստան մեռած էլմաս Իւթիւճեանի յիշատակին 20 Ն. Ֆ.։

Լիոնի Ազգ. Տիկնանց Միութիւնը շընորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները.— Գ. Ճապրայէլ Գահառուրեանէ 300 Ն. Ֆ., Գ. Անանիա Խաչնէճեան իր տիկնոջ ի յիշատակ 50 Ն. Ֆ., Տիկին Մայվինէ Տիւյմէճեան իր ծնողաց ի յիշատակ 20 Ն. Ֆ., Տիկին Մարիլուսեան իր ծնողաց ի յիշատակ 20 Ն. Ֆ., Տիկին Հայկանուշ Մանուկեան իր զաւկին ապաքինման առթիւ 10 Ն. Ֆ., Գ. Արսէն Թէրզեան 50 Ն. Ֆ.։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կրօն. Ընկերակցութեան վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ Փալամուտեան–Գայսէրլեան պսակադրութեան առիթով շընորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Գ. Գ. Փալամուտեանէ, Թուղլաճեանէ, Ե. Միհրանեանէ եւ Ոմնէ 10ական Ն. Ֆ.։ Գ. Գ. Ծըճըրեանէ, Մալխասեանէ, Թուլումպաճեանէ եւ Տէր եւ Տիկին Կրոցայէ՝ 5ական Ն. Ֆ.։

× Վարչութիւնը կը յիշեցնէ թէ պսակադրութեան արտնօռուած թուականն է մինչեւ Փետրուար 27։

× Թիֆլիզէն Լուսիկ Մարտիրոսեան կը փնտռէ իր եղբայրը՝ Սողիկ Մարտիրոսի Խաչատուրեան (մօր անունը՝ Սալվար, զաւկի անունը՝ Մկրտիչ), որ կը կարծուի Մարսէյլ գտնուիլ։ Նամակ ստանալ եկեղեցիէն։ Ճանչցողներէ կը խնդրուի լուր տալ։

× Եկեղեցին այրի Տիկին Վերժին Զամպաղճեանէ շնորհակալութեամբ ստացած է գորգ մը, նուէր ուխտի։

Օր. ՓՕԼԷԹ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ
Գ. ՓՕԼ ՄԽԻԹԱՐԵԱՆ
Ամուսնացած
16 Յունուար, 1960, Պրիւսէլ

×

Այս առթիւ Տէր եւ Տիկին Պաղտասարեան 10ական Ն. Ֆ. կը նուիրեն «Յառաջ»ին, Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին, Մշակոյթի Տան եւ Մշակոյթի Տան Գ. Բալայեան սրահին։

(Ստանալ «Յառաջ»էն)։

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը, Մանուկներու Օրը կը տօնէ մեծ պատրաստութեամբ։

Կիրակի (31 Յունուար), ժամը 15ին, Ռիւ Ժէֆի սրահին մէջ։

Կապոյտ Խաչի դպրոցի աշակերտութեան կողմէ գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին։

Կը ներկայացուի Յիսուսի Ծնունդը՝ երգախառն գեղեցիկ պատկերներով։ Տեղի կ'ունենան խմբերգներ, արտասանութիւններ, տրամախօսութիւն, եւ մանկական զաւեշտ։

Աւանդական Կաղանդ Պապան նուէրներ կը բաժնէ, սրահին մէջ ներկայ եղող բոլոր փոքրիկներուն։

Մուտքը ազատ է։ Սիրով կը հրաւիրուին Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընամի հայրենակիցները։

## "ՅԱՌԱՋ"Ի ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Ֆրանսա եւ Խասարակապետութիւն.—
Տարեկան.— 40 Ն. Ֆր. (4000)
Վեցամսեայ 22 Ն. Ֆր. (2200)։
Արտասահման.—
Տարեկան 50 Ն. Ֆր. (5000)։
Բաժանորդագրութիւնները կը վճարուին կանխիկ։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ
ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
(ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ)
ՄԱՐՏ 13 ԻՆ



## ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻՆ

29րդ տարեկան ցերեկոյթը

Կիրակի, Մարտ 6, կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Սալ տը լա Շիմի,

28 bis, Rue St. Dominique, Paris 7e

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր. 20ին, Շաբաթ երեկոյեան։

Սիփան – Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Ափրիկեանի)։ Ապրիլ 17ին

## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վալանսի Նոր Սերունդի «Շ. Միսաքեան» խումբին կողմէ։

Յունուար 30, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ լոյս։

Salons de l'Hôtel-de-la-Croix d'Or
Place de la République

Նուագախումբ՝

MODERN - JAZZ - QUINTETTE

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| ԾՆՈՒՆԴ | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

ըիկացիները շատ հաւանական է որ մայր երկրէն (Ֆլորիտա) մատակարարեն կայանի ուժերը փոխանակ զէնքի դիմելու :

Մէկ բան յստակ է Քուպա – Ամերիկա յարաբերութիւնները իրենց սեւ կէտին հասած ըլլալ կը թուին :

Աչքառու երկրորդ երեւոյթը Մեքսիկայի եւ Պրազիլիոյ նախագահներուն տեսակցութիւնն է ու այդ առթիւ հրատարակուած զեկոյցին տուն տուող մտքերը :

Այղընհաուըրի Լատին Ամերիկա ճամբորդութեան թուականէն շուրջ մէկ ամիս առաջ Հար. Ամերիկայի երկու կարեւորագոյն երկիրներու համաձայնութիւնը՝ անշուշտ իր անդրադարձումը պիտի ունենայ :

Ցարդ՝ Մեքսիկա կը խուսափէր պարտաւորութեանց տակ մտնելէ, մինչ նոր համաձայնագրով Մեքսիկա ինչպէս եւ Պրազիլիա բաղձանք կը յայտնեն որ 20 երկիրներու մէջ բաժնուած երկու հարիւր միլիոն Լատին Ամերիկացիները միանան՝ տնտեսական, քաղաքական եւ մշակութային մարզերու մէջ եւ «որդեգրեն միացեալ քաղաքականութիւն» մը :

Մասնաւոր ուշադրութիւն կը գրաւէ զեկոյցին երկրորդ պարբերութիւնը ուր՝ փափաք կը յայտնուի որ այսուհետեւ աշխարհի խաղաղութիւնը ապահովող վեհաժողովներուն եւ ժողովներուն մէջ լսելի դառնայ նաեւ իրենց ձայնը :

Անտարակոյս Այղընհաուըրի շրջագայութիւնը դէպի Լատին Ամերիկա իր անդրադարձումը պիտի ունենայ :

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Վիէնի Անի կոմիտէն եւ իր ընկերները, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի խումբը, Կապոյտ Խաչի մասնաճիւղը իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն, Յովհաննէսեան եղբայրներուն եւ քոյրերուն, Տէր եւ Տիկին Ղազար Կարապետեանի եւ զաւակներուն, իրենց սիրեցեալ եղբօր ԺԱԳ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆԻ (20 տարեկան), կսկծալի մահուան առթիւ, (Ալժերիոյ ճակատին վրայ ինկած) :

## Ա Զ Դ

Զափազանց տկարութեանս եւ ուժասպառ վիճակիս պատճառով Ս. Ծննդեան տօնական օրերու սովորական այցելութիւնները պիտի չկրնամ կատարել : Այս առթիւ բոլորին ալ շնորհաւորելով Նոր Տարին եւ Ս. Ծնունդը, կը խնդրեմ իրենց ներողամտութիւնը, մաղթելով երջանկագոյն երկար տարիներ :

ԱԴԴԻ ՔՀՆՅ. ՓԱՅԼԱԿԵԱՆ
31–33 Ցիւ Սէն Ժիւսթ, Առնուվիլ

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅ - ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Սեպտեմբեր – Հոկտեմբեր (թիւ 213 – 214) ճոխ եւ այլազան բովանդակութեամբ. —

Դեղահատի դարը (Հայ-Բոյժ). — Առողջութիւն բարոյական ուժով (Տոքթ. Գլոնտէլ). — Առանց ցաւի ծննդաբերութիւն (Փրոֆ. Մարգարեան). — Ստամոքսի խոց (Տոքթ. Աշճեան). — Ջուկը Հայաստանի մէջ, ձկնորսութեան ձեւերը, ձուկի տեսակները եւ անոնց համը (Փիրուզեան). — Ի՞նչ գիտէք ճանճերու մասին (Տոքթ. Այվազեան). — Աւազ ի վերայ ճանճի (Մինաս Թոխաթցի). — Ականջի ցաւը... քանաէրի նշան (Տոքթ. Ասֆանազ). — Խրատներ լեարդի հիւանդներուն (Տոքթ. Գալուստեան). — Բերանը ծռեցաւ... (Տոքթ. Քարոն). — Ոտքերը չեն բռներ (Տոքթ. Ազատեան). — Զղեար կամ մուշմուլա, պատմութիւնը եւ սննդական ու բժշկական արժէքը (Շ. Նարդունի). — Բարի ախորժակ, տիկիններ եւ պարոններ (Տոքթ. Շ. Օհան) :

Բաժանորդագրութեան պայմաններ. — Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք) : Արտասահման 20 նոր ֆրանք (2000 ֆր., երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար 37,5 նոր ֆրանք (3750 ֆր.) :

Ch. Aivazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վալանսի Նոր Սերունդի «Շ. Միսաքեան» խումբին կողմէ :

Յունուար 30, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ լոյս :

**Salons de l'Hôtel-de-la-Croix d'Or**

Place de la République

Նուագախումբ՝

**MODERN - JAZZ - QUINTETTE**

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը, Մանուկներու Օրը կը տօնէ մեծ պատրաստութեամբ :

Կիրակի (31 Յունուար), ժամը 15ին, Ռիւ Ժէի սրահին մէջ:

Կապոյտ Խաչի դպրոցի աշակերտութեան կողմէ գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին :

Կը ներկայացուի Յիսուսի Ծնունդը՝ երգախառն գեղեցիկ պատկերներով : Տեղի կ'ունենան խմբերգներ, արտասանութիւններ, տրամախօսութիւն, եւ մանկական զաւեշտ :

Աւանդական Կաղանդ Պապան նուէրներ կը բաժնէ, սրահին մէջ ներկայ եղող բոլոր փոքրիկներուն :

Մուտքը ազատ է : Սիրով կը հրաւիրուին Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընամի հայրենակիցները :

## ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի առաւօտ պատարագ կը մատուցուի Շաւիլի նորակառոյց եկեղեցւոյ մէջ :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Գործաւորուհի մը դերձակի օգնական (փինիշէօզ) : Տեւական գործ : Դիմել՝

BASMADJIAN MAURICE
39, Rue Montmartre, Paris 2e





## ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻՆ

29րդ տարեկան ցերեկոյթը

Կիրակի, Մարտ 6, կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Սալ տը լա Շիմի,

28 bis, Rue St. Dominique, Paris 7e

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
(ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ)

ՄԱՐՏ 13 ԻՆ

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ. — Հ. Յ. Դ. «Քրիստափոր» ենթակոմիտէի ու «Շաւարշ Միսաքեան» խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, «Ահարոնեան» ակումբը : Կարեւոր օրակարգ :

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :

## 1960Ի "ԳՈՅԱՄԱՐՏ" ՕՐԱՑՈՅՑ-ԱԼՊՈՄԸ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԻՆ

Հ. Յ. Դ. 70ԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ — Ընտիր թուղթով — 13 էջ

Շքեղ նկարներ, գրական եւ պատմական նիւթերով, ճոխ բովանդակութիւն :

ԳԵՂԱԶԱՐԴ ԵՒ ԳՈՒՆԱՒՈՐ ԿՈՂՔ

Բացառիկ խնամքով եւ ճաշակով պատրաստուած այս ՕՐԱՑՈՅՑ – ԱԼՊՈՄԸ պիտի կազմէ ամէն հայկ. տան զարդը :

Գին 500 ֆրանք

Փարիզի համար դիմել՝ LIBRAIRIE H. SAMUELIAN 51, Rue Mr.-le-Prince, Paris 6e

Կը ծախուի նաեւ Յառաջի մօտ :





Imprimerie Spéciale du Journal « Haratch »

վրայ Ֆրանսացիք զինուորական կայան հաստատած են մեր հողին այդ մասին վրայ: Մեր երկիրը ծախու չէ: «Կը սպասենք — աւելցուցած է ան — մինչեւ փետրուար 8, (Սաքիէթ – Սիտի – Եուսուֆի ռմբակոծման տարեդարձը) խաղաղ միջոցներով եւ իրարհասկացողութեամբ կարգադրելու համար պարպումի հարցը, այլապէս պիտի սկսինք յամառ պայքար մը»:

Անդրադառնալով Պուրկիպայի երկու ճառերուն, արտասանուած մէկ օրուան ընթացքին, առաւօտեան թերթերէն՝ «Ֆիկառօ» հետեւեալ խորհրդածութիւնները կ'ընէ — «Անսպասելի կերպով Պիզէրթի պարպումի հարցը կապելով Քէկանի (Սահարա) հիւլէական ռումբի փորձին հետ, Պուրկիպա, անտարակոյս ուզեց օգտուիլ հոգեբանական նպաստաւոր եւ պատեհ առիթէ մը: Արդարեւ՝ այս օրերուն Թունուզ հաւաքուած են Ափրիկէի ժողովուրդներու ներկայացուցիչները ինչպէս եւ 300է աւելի միջազգային դէտեր»:

Միւս կողմէն «Ֆիկառօ»յի Թունուզի թղթակիցը կ'ըսէ թէ Յունուար 2ին, տեղւոյն ֆրանս. դեսպանը տեսակցած է Թունուզցի պետական երկու անձնաւորութիւններու հետ եւ այդ տեսակցութիւնը «բուռն վէճով» մը վերջացած է:

Շատ հաւանական է որ Թունուզի նախագահին ճառը նոր բարդութեանց դուռ բանայ:

× Ափրիկէի ժողովուրդներու համագումարի բացման առթիւ շնորհաւորական հեռագիրներ ղրկած են Խրուշչեւ եւ Չու Էն Լայ:

Խրուշչեւ իր հեռագրին մէջ ի միջի այլոց կ'ըսէ — «Ափրիկէի ժողովուրդները՝ յանձին Խ. Միութեան սրտցաւ եւ այլասէր բարեկամ մը ունին:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՆԱԽԱԳԱՀ ԱՅԶԸՆՀԱՈՒԸՐ ժամուլի ասուլիսին՝ անդրադառնալով այն մտավախութեանց որ Միացեալ Նահանգները ետ մնալու վրայ են «անզինութեան մրցակցութեան» մէջ եւ այս ձեւով անխուսափելիօրէն երկրորդական ուժ մը պիտի դառնան, առաջնութիւնը ձգելով Խ. Միութեան՝ հաւաստիացուցած է թէ իրենք եւս մեծ եւ նշանակալի նուաճումներ արձանագրած են այս մարզին մէջ, «սակայն — աւելցուցած է Այք — «փողոցի մարդը տպաւորուած է Սպուտնիկներու յաջողութիւնէն մոռնալով որ մենք եւս համարժէք կարեւորութեամբ յաջողութիւններ արձանագրեցինք: Ինչ կը վերաբերի Մ. Նահանգներու պաշտպանողական ուժին, ամէն ոք կրնայ վստահ ըլլալ որ «ունինք անհրաժեշտը ճզմելու համար որեւէ յարձակում»:

ՓԱՐԻԶԻ մէջ, սրտի տագնապէ մեռած է ծանօթ դիւզնիչ՝ Տոքթ. Փոլ: Ցայտնի օրէնսդէտ, 1905էն ի վեր դիազննած է մօտ 140.000 դիակներ: Ծնած էր 1879ին Պուլոներ Սիւր Մէր: Իր դիազննած մարմիններուն մէջ եղած են ժան Ժոռէս, Լանտրիւ, Սթավիսքի, Նախագահ Փ. Տումէր եւ Փ. Լաւալ:

ՀՆԴԿԱՍՏԱՆ մեծ շուքով եւ հանդիսութիւններով տօնած է իրանկախութեան եւ հանրապետութեան հռչակման 10րդ տարեդարձը: Նոր Տէլհիի մէջ հնդկական ցամաքի, օդի եւ ծովի ուժերը տողանցած են:

---

Պ. Անդրէաս Ակինեան, Տէր եւ Տիկին Կարապետ (Ժան) Ակինեան եւ զաւակները, Օր. Անժէլ Ակինեան, Հ. Ներսէս Վ. Ակինեան (Վիէննա), Հ. Պետրոս Վ. Ալաճաճեան (Երուսաղէմ), Փէթրոյեան եւ Սրապեան ընտանիքները ցաւով սրտի կը ծանուցանեն մահը իրենց զոքանչին, մեծ մօր, ազգականին եւ խնամիին,

ԱՅՐԻ ՏԻԿ. ԶԱՐՈՒՀԻ ՓԷԶԷՄԵԱՆԻ
(Ծնեալ Այտինեան)

որ հանգեաւ ի Տէր, զօրացած եկեղեցւոյ Ս. խորհուրդներով, 91 տարեկան հասակին, ամսոյս 19ին, յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ Յունուար 21ին, ընտանեկան սեղմ շրջանակի մէջ:

---

## ''ՅԱՌԱՋ'' ԿԸ ՆՈՒԻՐԷ

Պրիւքսէլէն Օր. Սիլվիան Մանուկեան կը վերանորոգէ իր հօրը՝ Յովհաննէս Մանուկեանի տարեկան բաժանորդագրութիւնը (Տէօրին):

ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

### ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վալանսի Նոր Սերունդի «Շ. Միսաքեան» խումբին կողմէ:

Յունուար 30, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ լոյս:

**Salons de l'Hôtel-de-la-Croix d'Or**

Place de la République

Նուագախումբ՝

MODERN - JAZZ - QUINTETTE

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը, Մանուկներու Օրը կը տօնէ մեծ պատրաստութեամբ:

Կիրակի (31 Յունուար), ժամը 15ին, Ռիւ Ժէի սրահին մէջ:

Կապոյտ Խաչի դպրոցի աշակերտութեան կողմէ գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին:

Կը ներկայացուի Ցիսուսի Ծնունդը՝ երգախառն գեղեցիկ պատկերներով: Տեղի կ'ունենան խմբերգներ, արտասանութիւններ, տրամախօսութիւն, եւ մանկական զաւեշտ:

Աւանդական Կաղանդ Պապան նուէրներ կը բաժնէ, սրահին մէջ ներկայ եղող բոլոր փոքրիկներուն:

Մուտքը ազատ է: Սիրով կը հրաւիրուին Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընաժի հայրենակիցները:



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻՆ

29րդ տարեկան ցերեկոյթը

Կիրակի, Մարտ 6, կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Սալ տը լա Շիմի,

28 bis, Rue St. Dominique, Paris 7e

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
(ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ)

ՄԱՐՏ 13 ԻՆ



### Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» ենթակոմիտէի ու «Շաւարշ Միսաքեան» խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, «Ահարոնեան» ակումբը: Կարեւոր օրակարգ:

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ Կեդ. կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս Երկուշաբթի իրիկուն ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր. 20ին, Շաբաթ երեկոյեան:

Սիփան – Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Ափրիկեանի): Ապրիլ 17ին

ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի առաւօտ պատարագ կը մատուցուի Շաւիլի նորակառոյց եկեղեցւոյ մէջ:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Համազգային Մշակութային Միու – թեան Մարսէյլի մասնաճիւղը իր ցաւակ– ցութիւնը կը յայտնէ Տէր եւ Տիկին Կ. Փօլատեանի՝ իրենց հօր ողբ. Յակոբ Փօ– լատեանի ցաւալի մահուան առթիւ :

×

Տէր եւ Տիկին Ա. Քէօսէեան իրենց խո– րին ցաւակցութիւնը կը յայտնեն Տէր եւ Տիկին Կ. Փօլատեանի, իրենց հօր՝ ողբ. Յ. Փօլատեանի մահուան տխուր առթիւ եւ փոխան ծաղկեպսակի քսան Ն. Ֆ. կը նուիրեն « Յառաջ»ի եւ «Հայ–Բոյժ»ի բարգաւաճման համար :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Կապոյտ Խաչի Պանեէօ Բաչանի մաս – նաճիւղը շնորհակալութեամբ ստացած է 15 Ն. Ֆ. , Տէր եւ Տիկին Թուրքէն Մա – ղաղաճեանէ , փոխան ծաղկեպսակի Այրի Տիկնի Հոռոմ Տէր Սիմոնեանի մահուան առթիւ :

×

Տէսինէն ընկեր Սարգիս Առաքելեան, Տիկին Հայկանոյշ Բարսեղեանի մահուան առթիւ քսան Ն. Ֆ. կը նուիրէ Հայ Մը – շակոյթի Տան՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ սը– րահին : (Ստանալ «Յառաջ»էն) :

## ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի առաւօտ պատարագ կը մատուցուի Շաւիլի նորակառոյց եկեղեց– ւոյ մէջ :

## ԿՈՒԶՈՒԻՆ

Ձեռնարկուներ, ժիւփի համար , կարել եւ կարել գիտցող, մեծ սեռի : Դիմել՝

MANIGOFF
11, Rue Saint-Joseph Paris
GUT. 36-51

## ԳՐԱՏՈՒՆ ՊԱՐՍԱՄԵԱՆ

46, Rue Richer - Paris (9e)
C. C. P. Paris 3630 - 66
Tél. : PRO vence 64 - 90

Նոր Հրատարակութիւններ

ԱՄԷՆՈՒՆ ՏԱՐԵԳԻՐՔԸ, Կարօ Գէ – որգեանի, 1960 , է. տարի, կազմուած , պատկերազարդ 16·50 Ն. Ֆ., թղթատա– րի ծախք 2 Ն. Ֆ. :

Le Vert Soleil de la Vie
Victor Gardon (Roman) 6,60
L'Arménie. J. P, Alem 2,00

ՊՐԻՍՄԱԿ, Գ. Համբարձումեան 5 Ն. Ֆ. :

ՀԱՅ ԳՈՂԳՈԹԱՆ, Գրիգորիս Եպ. Պա– լաքեան, Բ. հատոր, Փարիզ, 1960 , 15 Ն. Ֆ. :

Թղթատարի ծախքը գնողին կը պատ – կանի :

ԽՈՉԿԱՏՑԻՆԵՐՈՒ ՕՐԱՑՈՅՑԸ
(1960)

Դիմել Պ. Ե. Աստուածեանի, 48 Րիւ տը լա Տեփանն, ԻՍԻ :

Imprimerie Spéciale du Journal « Heratch »

ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վալանսի Նոր Սերունդի «Շ. Միսաքեան» խումբին կողմէ :

Յունուար 30, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ լոյս :

**Salons de l'Hôtel-de-la-Croix d'Or**
Place de la République

Նուագախումբ՝

MODERN - JAZZ - QUINTETTE

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը, Մանուկներու Օրը կը տօնէ մեծ պատ – րաստութեամբ :

Կիրակի (31 Յունուար) , ժամը 15ին, Ռիւ Ժէի սրահին մէջ :

Կապոյտ Խաչի դպրոցի աշակերտու – թեան կողմէ գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին ;

Կը ներկայացուի Ցիսուսի Ծնունդը՝ երգախառն գեղեցիկ պատկերներով : Տե– ղի կ'ունենան խմբերգներ, արտասանու – թիւններ, տրամախօսութիւն, եւ մանկա– կան պարեր :

Աւանդական Կաղանդ Պապան նուէր – ներ կը բաժնէ, սրահին մէջ ներկայ եղող բոլոր փոքրիկներուն :

Մուտքը ազատ է : Սիրով կը հրաւիր– ուին Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընաժի հայրենակիցները :



## ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻՆ

29րդ տարեկան ցերեկոյթը

Կիրակի, Մարտ 6 , կէսօրէ վերջ ժամը 2·30ին, Սալ տը լա Շիմի,
28 bis, Rue St. Dominique, Paris 7e

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
(ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ)
ՄԱՐՏ 13 ԻՆ

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ — Հ. Յ. Դ. «Քրիստափոր» ենթակոմիտէի ու «Շաւարշ Միսաքեան» խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, «Ահարոնեան » ակումբը : Կարեւոր օրակարգ :

ԱԼՖՈՐՎԻԼ — Հ. Յ. Դ. Ս. Մինաս – եան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հը– րաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին : Ներ– կայ կ'ըլլայ շրջ. կոմիտէի ներկայացու – ցիչը : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ : Կա– րեւոր օրակարգ :

ՓԱՐԻԶ — Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս Երկուշաբթի երե – կուն ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ : Կարեւոր օրակարգ : Պարտաւորիչ ներ – կայութիւն :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ — Հ. Յ.Դ. «Սիամանթօ» խում– բի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր. 20ին, Շաբաթ երեկոյեան :

Սիփան – Կոմիտաս երգչախումբի հա – մերգը (ղեկավարութեամբ Կարպիս Ափ– րիկեանի) : Ապրիլ 17ին

## 1960Ի "ԳՈՅԱՄԱՐՏ" ՕՐԱՑՈՅՑ-ԱԼՊՈՄԸ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԻՆ

Հ. Յ. Դ. 70ԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ — Ընտիր թուղթով — 13 էջ

Շքեղ նկարներ, գրական եւ պատմական նիւթերով, ճոխ բովանդակութիւն :

ԳԵՂԱՑԱՐԴ ԵՒ ԳՈՒՆԱՒՈՐ ԿՈՂՔ

Բացառիկ խնամքով եւ ճաշակով պատրաստուած այս ՕՐԱՑՈՅՑ – ԱԼՊՈՄԸ պիտի կազմէ ամէն հայկ. տան զարդը :

Գին 500 ֆրանք

Փարիզի համար դիմել՝ LIBRAIRIE H. SAMUELIAN 51, Rue Mr.-le-Prince, Paris 6e
Կը ծախուի նաեւ Յառաջի մօտ :

Քաղաքացիական պատերազմի մը պատասխանատուութիւնը առի անձնատուին առաջքն առնելու համար »:

Տըլուվրիէ երկարօրէն պարզեց նախ Մայր Երկրի ժողովուրդին, ապա Ալժէրի, թէ ինչ հոգեկան տագնապ կ'ապրին Ալժէրի զինուորականները:

Տըլուվրիէ խօսքը ուղղելով բանակին ըսաւ. — « Ալժերիոյ բանա՛կ, աղաչանք մըն է, բայց նաեւ հրաման մը, եղէք Զօր. Շալի ետին, եղէք տը Կոլի ետին, կեցցէ՛ տը Կոլ»:

Այս ճառին պատասխանելով Լակայատ եւ Օրթիզ զեկոյց մը հրատարակեցին որուն մէջ նախ ամէն ապահովութիւն տուին Կառավարութեան Ընդհ. Պատուիրակին որ իր կինը եւ զաւակները դէչ վերաբերմունքի չենթարկուիր: «Վայրենիներ չկան ոչ մեր և ոչ բանակին մէջ», զեկոյցին մէջ, կ'աւելցնեն նաեւ « Ֆրանսան մէկ բան է, տը Կոլ ուրիշ բան մըն է, բաւական տարբեր »:

Մինչ Տըլուվրիէ եւ Շալ դէպի «Գլեա» կը մեկնէին, Փարիզի մէջ ձերբակալութիւններ եւ խուզարկութիւններ տեղի կ'ունենային աջ շրջանակներու մէջ: 80 հոգի կը հարցապնդուէին, ասոնց կարգին՝ երեսփոխան Լը Փէնոր կը ձերբակալուէր:

Նոյն օրը Նախագահ տը Կոլ Պետութեան Խորհուրդին կ'այցելէր: Պատասխանելով Քասէնի բարի գալուստի ճառին, Զօր. տը Կոլ ըսաւ.— Ֆրանսան գոյութիւն ունի պետութեան շնորհիւ եւ ոչ մէկ բան այնքան կարեւոր է որքան պետութեան օրինաւորութեան պահպանումը »:

× Ուրբաթ առտու համայնավար պաշտօնաթերթը՝ Իւմանիթէ գրաւուեցաւ: Գրաւած է նաեւ Ալժէրի Սալիւ Փիւպլիքը:

× Զօր- Նօրսթատ յայտարարեց թէ Ատլանտեան Ուխտի բոլոր երկիրներու շահը կը պահանջէ որ Ալժերիոյ տագնապը լուծուի: Ալժերիոյ կացութիւնը ծանր գէպք մըն է որ կը շահագրգռէ ամբողջ Ուխտը »:

———o———

ՕՍՍԵՐՎԱԹՈՐԷ ՌՈՄԱՆՕ երկար յօդուած մը հրատարակած է «Խորհրդային անաստուածութեան» վրայ: Յօդուածագիրը կը շեշտէ թէ մինչ Խորհ. Միութիւնը կ'ուզէ հաւատացնել արեւմուտքին թէ հանդուրժողական դարձած է եկեղեցւոյ հանդէպ, իրականին մէջ անոնք որ Խ. Միութեան մէջ կը փորձեն իրենց տղոց կրօնական դաստիարակութիւն տալ, իրենց գործը կը կորսնցնեն:

## ՀԱՅԱՄԷՍ ՊԱՏԱՐԱԳ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Այս Կիրակի ժամը 17·30ին, ձայնաւոր պատարագ պիտի մատուցուի Սէն Շարլ եկեղեցւոյ մէջ, քրիստոնեաներու միութեան համար: Կը նախագահէ Մարսէյլի վիճակաւորը՝ Գերապայծառ Լալիէ: Կը պատարագէ Յովհաննէս Ծ. Վ. Զուխաճեան (Պուշ Տիւ Ռոնի եւ Վառի ժողովրդապետ):

Երգեցողութիւնը պիտի կատարէ հայ կաթողիկէ Ս. Գրիգոր Լուսաւորիչ երգչախումբը:

Բոլոր հաւատացեալները կը հրաւիրուին:



Ալժերիոյ ճակատին վրայ, Յունուար 24ին, իր արձակումէն ութ օր առաջ, ինկած է՝

### ՄԻՇԷԼ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ

Տարաբախտ երիտասարդը 23 տարեկան էր, նախկին աշակերտ Սեւրի Մխիթարեան վարժարանին:

Մեր ցաւակցութիւնները իր ընտանիքին եւ Գ. Նուպար Յովհաննէսեանի:

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՀԱՅ - ԲՈՅԺ
### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ
խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

———o———

Սեպտեմբեր – Հոկտեմբեր (թիւ 213 – 214) ճոխ եւ այլազան բովանդակութեամբ. —

Դեղահատի դարը (Հայ–Բոյժ). — Առողջութիւն բարոյական ուժով (Տոքթ. Պլոնտէլ). — Առանց ցաւի ծննդաբերութիւն (Փրոֆ. Մարգարեան). — Ստամոքսի խոց (Տոքթ. Աշճեան). — Ջուկը Հայաստանի մէջ, ձկնորսութեան ձեւերը, ձուկի տեսակները եւ անոնց համը (Փիրուզեան). — Ի՞նչ գիտէք ճանճերու մասին (Տոքթ. Այվազեան). — Աւաղ ի վերայ ճանճի (Մինաս Թոխաթցի). — Ականջի ցաւը... քանաէրի նշան (Տոքթ. Ասֆանազ). — Խրատներ լեարդի հիւանդներուն (Տոքթ. Գալուստեան). — Բերանը ծռեցաւ... (Տոքթ. Քորոն). — Ոտքերը չեն բռներ (Տոքթ. Ազատեանի). — Զղեար կամ մուշմուլա, պատմութիւնը եւ սննդական ու բժշկական արժէքը (Շ. Նարդունի). — Բարի ախորժակ, տիկիններ եւ պարոններ (Տոքթ. Շ. Օնառ):

Բաժանորդագրութեան պայմաններ. — Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք): Արտասահման 20 նոր ֆրանք (2000 Ֆր., երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար 37.5 նոր ֆրանք (3750 Ֆր.):

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)



## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ընկեր Յովհաննէս Գօյաճեան, ընկեր Մարտիրոս Գօյաճեան, Գ. Օհան Գօյաճեան եւ իրենց ընտանեկան բոլոր պարագաները կը ծանուցանեն թէ այս Կիրակի յետ պատարագի, Վալանսի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին մէջ հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի իրենց սիրեցեալ ԺԱԳ ԳՕՅԱՃԵԱՆի մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
## ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վալանսի Նոր Սերունդի «Շ. Միսաքեան» խումբին կողմէ:

Յունուար 30, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ լոյս:

**Salons de l'Hôtel-de-la-Croix d'Or**
Place de la Republique

Նուագախումբ՝

MODERN - JAZZ - QUINTETTE

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ
ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
(ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ)
ՄԱՐՏ 13 ԻՆ

ԵՌԱԿԱՏՑԻՆԵՐՈՒ ՕՐԱՑՈՅՑԸ
(1960)
Դիմել Գ. Ե. Ատանալեանի, 48 Րիւ տը լա Տեֆանս, ԻՍԻ:

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ. — Հ. Յ. Դ. «Քրիստափոր» ենթակոմիտէի ու «Շաւարշ Միսաքեան» խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, «Ահարոնեան» ակումբը: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ. Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս Երկուշաբթի իրիկուն ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ. Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը, Մանուկներու Օրը կը տօնէ մեծ պատրաստութեամբ:

Կիրակի (31 Յունուար), ժամը 15ին, Ռիւ Ժէյի սրահին մէջ:

Կապոյտ Խաչի դպրոցի աշակերտութեան կողմէ գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին:

Կը ներկայացուի Ցիսուսի Ծնունդը՝ երգախառն գեղեցիկ պատկերներով: Տեղի կ'ունենան խմբերգներ, արտասանութիւններ, տրամախօսութիւն, եւ մանկական զաւեշտ:

Աւանդական Կաղանդ Պապան նուէրներ կը բաժնէ, սրահին մէջ ներկայ եղող բոլոր փոքրիկներուն:

Մուտքը ազատ է: Սիրով կը հրաւիրուին Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընամի հայրենակիցները:







Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ԱՐՁԱԳԱՆԳՆԵՐ

Ընկերվարականներ. — Հանրապետութեան Նախագահը հաստատեց Սեպտեմբեր 16ի կառավարութեան որոշումը : Օրինական գծով եւ հանրապետական բակերգութիւններով պիտի իրագործեն զայն : Անվերապահօրէն զօրավիգ կը կանգնինք՝ Նախագահին :

Փ. Ռէնօ (Նախկին վարչապետ անկախ). — Զօրավարը ցոյց տուաւ Ալժէրի ապստամբներուն թէ որքան մեծ զոհողութիւններ ընելու վրայ է, երկրի Ֆըրանսացի ժողովուրդը. թէ առանց այս զոհողութեանց չատոնց Ալժերիան ձեռքէ գացած կ'ըլլար: Նաեւ յստակ հասկցուց որ ինքնորոշման հիման վրայ կայացած ապագայ որոշումը միայն կրնայ տեւական եւ արդար ըլլալ :

Մ. Շումաճ (Նախագահ արտաքին յանձնախումբի). — Կարելի չէր դիտել եւ լսել զօրավարը առանց յուզուելու : Ան մեր մէջ արթնցուց ազնիւ զգացումներ :

Լոնտոն. — Զօրավարին ճառը որ իր էութեամբ կոչ մըն էր նաեւ կը ցուցայայտէ ինքնավստահութիւն եւ կորով եւ վերջապէս հաւատք ծրագրին յաջողութեան նկատմամբ: Թէեւ արտաքին նախարարութիւնը խուսափեցաւ կարծիք յայտնելէ սակայն յստակ է որ զօրավարին ճառը մեծ տպաւորութիւն ձգած է ընդհանրապէս պաշտօնական շրջանակներուն եւ առհասարակ ժողովուրդին վըրայ :

Պոն. — Գերման վարչապետ Ատընաուըրին կարծիքով Զօրավարը կայունութեան ապացոյցն է Ֆրանսային համար, եթէ երբեք հրապարակէն քաշուի քաոս մը պիտի թողու իր ետին:

Ուաշինկթըն. — Պաշտօնական շրջանակները ցարդ որեւէ տեսակէտ չյայտնեցին: Դեմոկրատ ծերակուտական՝ Կրընինկ խնդրած է Այզընհաուըրէն որ Ամերիկա զօրավիգ կանգնի տը Կոլին: Տրամադրութիւն կայ բազմաթիւ ծերակուտականներու մօտ որ Մ. Նահանգները ՄԱԿի նիստերուն պաշտպանեն եւ համակարծիք դառնան Ֆրանսայի՝ իր Ալժերիոյ վարած քաղաքականութեան առնչութեամբ:

## ՅԵՏԱՁԳՈՒԱԾ ԺՈՂՈՎ

Նահանգապետական հրամանով՝ այս օրերուս մայրաքաղաքիս մէջ հաւաքոյթները, արգիլուած ըլլալով, Նախկին Ռազմիկներու Միութեան տարեկան ընդհ. ժողովը որ տեղի պիտի ունենար այսօր (Կիրակի 31): 32 Ռիւ տը Թրէվիզ, Փարիզ, յետաձգուած է ուրիշ թուականի մը, զոր Միութիւնը պիտի տեղեկացնէ իր անդամներուն՝ պատեհ առենին:



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ — Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս Երկուշաբթի երեկոյեան ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ : Կարեւոր օրակարգ : Պարտաւորիչ ներկայութիւն :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սարգիս եւ Նուարդ Փափազեան (Մոնփելիէ), Տէր եւ Տիկին Յովէն Նաճարեան եւ զաւակները (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Եդուարդ Փափազեան եւ զաւակները (Մարսէյլ) շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որ ցաւակցութիւն յայտնեցին անձամբ, ծաղկեպսակով, հեռագրով եւ նամակով, իրենց մօր եւ մեծ մօր՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՄԱՔՐՈՒՀԻ ՓԱՓԱԶԵԱՆԻ

(Ծնեալ Շաքարեան)

մահուան առթիւ (Դեկտեմբեր 24, 1959):

Այս առթիւ 50 Ն. Ֆ. կը նուիրեն Մոնմորանսիի Հանգստեան տան եւ 50 Ն. Ֆ. Կապոյտ Խաչի կայանին : (Սատնալ Յառաջէն):

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ — Հ. Յ. Դ. «Սիամանթօ» խումբի տարեկան մեծ պարահանդէսը, Փետր. 20ին, Շաբաթ երեկոյեան :

Սիփան – Կոմիտաս երգչախումբի համերգը (ղեկավարութեամբ Կարպիս Ասիրիկեանի): Ապրիլ 17ին

×

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ

Գեղարուեստական ցերեկոյթը

ՄԱՐՏ 27ԻՆ

×

Փարիզի Համնոյ Հայր. Միութեան տարեկան պարահանդէսը Մարտ 13ին, Կիրակի ժամը 16էն մինչեւ 24. Ամպասատէօրի շքեղ սրահին մէջ :



### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Երեւանաբնակ Թոռնիկ Յաաբիկեան (ծընած 1920) Երեւան, հօրը անունը՝ Եղիշէ, մօրը Հռիփսիմէ, մեծ քոյրերը՝ Զաբիկ, Գոհարիկ եւ փոքր եղբայրը՝ Վազգէն : Կը խնդրուի արտասահմանի բոլոր հայ թերթերէն արտատպել: Կը խնդրուի տեղեկացնել, Հրաչեանին, 40 Ավընիւ տը լա Փըբլիք Սիւիս (Պօմոն), Մարսէյլ :

Imprimerie Spéciale du Journal « Haratch »



## ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ

## ՏԱՐԵԿԱՆ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ՝ ՓԵՏՐՈՒԱՐ 21

HOTEL GEORGE Vի ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

ժամը 17էն մինչեւ կէս գիշեր — ՊԱՐԻ ԵՐԿՈՒ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

**Cotillons - Tombola - Attractions**

Յնամուած պիւֆէ սովորական գիներով

Այժմէն ապահովեցէք ձեր տոմսերը եւ սեղանները Tel. TRO. 03-18 C.C.P. Paris 8019-72

Մուտք՝ 5 Ն. Ֆ., ուսանողներու համար 3 Ն. Ֆ. :